1917 № 2.—Յունուարի 15 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ Թիֆլիս, Արասարադեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**՝ տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.*

*ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ* **ՀԱՄԲԱՒԱԲԵՐ** *ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ*

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած կըլինի 8 (երբեմն 12—16) մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։*

*Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։ Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։*

*Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասարադեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։*

*Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ







## ԱՌԱՋԻԿԱՅ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԹԻՒ

Պետական և հասարակական խոշոր խնդիրներից մէկը այժմ համարւում է գաղթականական խնդիրը։

Այդ խնդրով լուրջ կերպով զբաղւում են թէ պետական-կառավարչական շրջանները և թէ հասարակական կազմակերպութիւնները։

Բարուոքել գաղթականների այժմեան ծանր վիճակը, թեթեւացնել նրանց թշուառ կացութիւնը, հոգալ նրանց վերադարձի մասին ապագայում, որը գուցէ շատ հեռու չէ, և, վերջապէս, ծրագրել և մշակել այն բոլորը, ինչ որ հարկաւոր կը լինի նրանց հայրենիքում, որպէս զի նրանք հնար ունենան վերադարձից յետոյ իսկոյն դիմել շինարարական գործի և կարող լինեն վերականգնել իրենց քայքայուած տնտեսութիւնը,—ահա այն հարցերը· որոնք կարեւոր նշանակութիւն ունեն թէ պետական և թէ հասարակական տեսակէտից։

Գաղթականները ոչ անկոչ հիւրեր են և ոչ էլ բախտախնդիր թափառականներ, այլ պատերազմի անմեղ զոհեր։

Ահա թէ ինչու նրանք իրաւամբ և բարոյապէս արժանի են սրտակից կարեկցութեան, մեծ ուշադրութեան և լայն օգնութեան։

Գաղթականները այն խաղաղ տարրն են, որոնք թէև մասնակից չեն եղել անմիջապէս կռիւներին, բայց կռիւների ամենածանր արհաւիրքները նրանց է վիճակուել։

Ռուսաստանի լայնատարած պատերազմական երկու ճակատներում՝ արեւելքում և արեւմուտքում միլիոնաւոր մարդիկ, որոնք զբաղուած էին իրենց սովորական, խաղաղ կեանքով, հարկադրուեցին պատերազմի պատճառաւ տեղահան լինելու և պանդխտութեան դիմելու, որոնք և տուին մարդկային զոհեր. սկսած ամենահամեստ աշխատաւորից մինչև արտասովոր հարստութիւն ունեցողները, զրկուեցին իրենց ունեցուածքից, իրենց երկարամեայ աշխատանքի արդիւնքից։

Այդ վիճակին ենթարկուեցին արեւմուտքում լեհեր, լատիշներ, հրէաներ, մասամբ և ռուսներ, իսկ արեւելքում՝ հայերը և սակաւաթիւ ասորիները։

Սակայն պատերազմից տուժող ազգութիւններից և ոչ մէկի վիճակը այնքան ողբալի չի եղել, ինչպէս տաճկահայերինը։

Հայերին հասած հարուածը արտասովոր էր. մարդկային պատմութեանը համանման օրինակ անյայտ է։ Ուրիշ երկրներում ժողովուրդը փախչում էր զօրքերի շարժումից, անխուսափելի հանգամանքներից, իսկ Տաճկահայաստանում ժողովուրդը զոհ դարձաւ կառավարութեան վաղեմի արիւնարբու բնաջնջման քաղաքականութեան, որպէս զի հայոց խնդիրը վերացուի դիւանագիտական և քաղաքական աշխարհից։

Եւ նա կարծես թէ հասաւ իր նպատակին. հայ ժողովրդի մի մասը կոտորուեց, միւս մասը աքսորուեց Միջագետք. մնացածներից ոմանք խմբերով պատսպարուեցին լեռներում և անտառներում, մի երեք հարիւր հազար հոգի էլ գաղթեցին մեր երկիրը՝ Կովկաս։

Ամբողջ Տաճկահայաստանը այժմ դարձել է համարեա ամայի և մի ողբալի պատկեր է ներկայացնում։

Բայց կը գայ մի օր, երբ ցիրուցան եղած հայերը կը վերադառնան իրենց վայրերը և կը սկսուի Հայաստանի շինարարական մեծ գործը։

Իսկ մինչև այդ օրը մենք պէտք է փայփայենք և պահպանենք այդ երկրից գաղթած ժողովուրդը, իբր ապագայ Հայաստանի յոյսն և յենարանը։ Թէ գաղթականների գոյութիւնը պահպանելու և թէ նրանց վերադարձի մասին հայկական կազմակերպութիւնները դեռ շատ անելիք ունեն։

Կառավարութիւնն ընձեռում է նիւթական միջոցներ, իսկ կազմակերպութիւնները, բացի իրենց կողմից ևս նիւթական միջոցներ հայթայթելուց, պարտաւոր են իրենց վրայ վերցնել ամբողջ աշխատանքը թէ այժմ և թէ ապագայում, երբ կը սկսուի գաղթականների վերադարձը հայրենիք։

Այդ աշխատանքը շատ ծանր է և բարդ և պահանջում է մեծ հմտութիւն և անձնուիրութիւն։

Նիւթական միջոցները և աշխատանքի խելացի կատարումը համահաւասար պայմաններ են ամեն մի գործի յաջողութեան։

Եթէ մեր հասարակական և ազգային գործերը փչանում են և առաջ չեն ընթանում ցանկալի չափով, երբեմն պատճառը լինում է ոչ թէ նիւթականի պակասութիւնը, այլ յաճախ հմուտ և անձնուէր գործիչների բացակայութիւնը։

Գաղթականների վերաբերմամբ պէտք է յուսալ, որ նիւթական միջոցների կողմից դժուարութիւններ չեն լինիլ, քանի որ գաղթականական հարցը դուրս է եկել բարեգործութեան շրջանից և դարձել է պետական պարտականութիւն։

Բայց թէ ինչպէս կը կատարուի աշխատանքը և հոգսը, որ գաղթականները զերծ մնան կորուստներից հիւանդութեան, քաղցածութեան և մերկութեան պատճառաւ, և թէ ինչպէս անելու է, որ նրանք վերադարձից յետոյ կարող լինեն անցնել շինարարութեան թշուառ Հայաստանը կենդանացնելու համար,—ահա թէ ուր հայ գործիչները և հայ կազմակերպութիւնները պէտք է հանդէս բերեն իրենց բոլոր ոյժերը, ընդունակութիւնները և անձնուիրութիւնը։

Այս հարցը վաղուց է զբաղեցնում է մեզ բոլորիս, բայց որոշ և նպատակաւոր լուծումն տալու համար դեռ շատ քիչ բան է արուած, եթէ չասենք ոչինչ։

Ճիշտ է, այդ մտքով անցեալ տարի ապրիլին հայկական կազմակերպութիւնների ներկայացուցիչներից կայացաւ Պետրոգրադում համագումար. քննութեան ենթարկուեցին շատ հարցեր, բայց որոշումները ունեցան միայն տեսական նշանակութիւն, իսկ գաղթականների համար չունեցան ոչ մի գործնական հետևանք։

Այդ համագումարի մշակած կանոնադրութեան մէջ՝ միութիւն ստեղծելու հայ կազմակերպութիւնների միջև, չիրագործուեց, իսկ միւս ցանկութիւնը՝ հրաւիրել երկրորդ

համագումար Էջմիածնում կամ Երևան, իրագործման նախօրեակին է։

Առաջիկայ փետրուարին Երևանում գաղթականական խնդիրների մասին կը կայանայ նոր համագումար հայկական կազմակերպութիւնների։

Երկրիս բարձր իշխանութիւնը արդէն տուել է իւր համաձայնութիւնը։

Այժմ հայ կազմակերպութիւնների ներկայացուցիչներից է կախուած դարձնել այդ համագումարը արդիւնաւոր իւր գործնական հետևանքներով։

Լեհացիները թող կենդանի օրինակ լինեն մեզ համար։ Լեհերի բոլոր կազմակերպութիւնները և գործիչները միացել են գաղթականութեան շուրջը և աշխատում են մեծ ոգևորութեամբ և համերաշխութեամբ, իսկ կազմակերպութիւնների հետ կապուած է Ռուսաստանում ցրուած ամբողջ լեհական ժողովուրդը՝ գիւղացի ու բանուոր, և արհեստաւոր, և առևտրական ու պաշտօնեայ, անկախ իր դիրքից և աստիճանից։

Այս գեղեցիկ երևոյթը շատ հասկանալի կը լինի, եթէ ի նկատ առնենք այն առողջ ազգասիրութիւնը, որով ներշնչուած և տոգորուած է ամեն մի լեհացի։

Գործող հայ կազմակերպութիւնները՝ զանազան ընկերութիւնների և կոմիտէների անունով, պէտք է կայանալիք համագումարում կենդանի կապ ստեղծեն միմեանց մէջ, մշակեն և ընդունեն մի պարտաւորեցուցիչ գործելակերպ և ծրագիր և այդ եղանակով առաջ տանեն գաղթականական գործը, եթէ ցանկանում են, որ նրանց գործունէութիւնը լինի բեղմնաւոր և գաղթականների համար օգտակար և արգասաւոր։

Ծրագիրը պէտք է ունենայ այն յատկութիւնը, որ ամեն մի կազմակերպութիւն ազատ գործի իւր ոյժերի սահմանում, բայց միաժամանակ նա շաղկապուած լինի միւս ընկերութիւնների հետ, իբր ամբողջութեան մի մասնիկը։

Գաղթականական կազմակերպութիւնները միացնողը, նրանց միմեանց հետ կապողը և ղեկավարողը պէտք է լինի մի կենտրոնական մարմին, որը յարմար կը լինի անուանել «կենտրոնական խորհուրդ գաղթականական կազմակերպութիւնների»։

Համագումարը պէտք է ընտրի այդ խորհրդի անդամներին. նա պէտք է վերաքննի Պետրոգրադում կազմած միութեան կանոնադրութիւնը և ներկայացնի պատշաճաւոր իշխանութեան ի հաստատութիւն. վերջապէս, նա պէտք է ճգնի ստեղծել մշտական աղբիւր նիւթական միջոցների։

Այդ աղբիւրը պէտք է լինի ազգային և պարտաւորիչ տուրք ամեն մի շնչից միանուագ և ամսական։

Այս ձևով ժողովարարութիւնը երբէք ծանրացուցիչ չի լինիլ տուողի համար, իսկ ազգային սնդուկը կը մտնեն խոշոր գումարներ։

Կենտրոնական Խորհուրդը, մեր կարծիքով, պէտք է իրա պաշտօնատեղը ընտրի Թիֆլիսը, որը ունի շատ մեծ առաւելութիւններ ուրիշ տեղերի հետ համեմատած. նա պէտք է գտնուի Ամենայն Հայոց Կաթողիկոսի բարձր հովանաւորութեան տակ և պարբերաբար պէտք է նիստեր ունենայ և Էջմիածնում Կաթողիկոսի պատուաւոր նախագահութեամբ։

Համագումարի օրերը մօտենում են։

Թող ամեն մի կազմակերպութեան վարչութիւն վաղօրօք լուրջ քննութեան առնի համագումարին առաջարկելիք խնդիրները, որպէսզի ներկայացուցիչները ներկայանան համագումարին մշակուած գործնական ծրագրով և լաւ մտածուած առաջարկութիւններով։

Համագումարը միմիայն այս տեսակ պայմաններում կը լինի բեղմնաւոր և կունենայ գործնական հետևանքներ։

Պէտք է խորը գիտակցենք, թէ որքան ծանր և լուրջ խնդիրների առաջ ենք կանգնած և թէ դեռ որքան մեծ աշխատանք ունենք կատարելու։

Օ՜ն ուրեմն ի գործ։

Ա. Յ.

---

## ՆՇԱՆԱՒՈՐ ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿ *)

(1876—1916)

Այս արիւնոտ օրերում հայերի կեանքը Կ. Պոլսում ընթանում էր սովորական կերպով։ Մայիսի 7-ին Ներսէս պատրիարքը բաց արաւ Ազգային Ժողովի նոր նստաշրջանը ամենալաւ տրամադրութիւններով։ Հայոց ազգը միայն մի ցաւ ունէր, և այդ ցաւը գաւառներում կատարուող հարստահարութիւններն էին, որոնք վաղուց ի վեր դարձել էին հայ կեանքի մշտական երևոյթ և որոնցից տառապում էր մանաւորապէս հայ գիւղացութիւնը։ Դեռ 1872 թուականին Ազգային Ժողովը խմբագրել էր մի մանրամասն տեղեկագիր այդ հարստահարութիւնների մասին, ցոյց էր տուել թէ ինչ միջոցներով կարելի է ազատել հայ խոնարհ հարկատու և շինարար ժողովուրդը քրդերի և թիւրք վատ պաշտօնեաների կեղեքումներից։ Դա հայոց հարցն էր, գաւառական հայութեան համար կեանքի, գոյքի և պատուի ապահովութիւն ստեղծելու հարցը։ Ներկայացնելով նրան թիւրք կառավարութեան, Ազգային Ժողովը մի շարք հպատակական ցոյց էր արել, բարձրաձայն յայտարարելով թէ այս հարցը Թիւրքիայի ներքին գործն է, պիտի լուծուի թիւրք կառավարութեան ձեռքով և հայերը դիմում են նրան ճիշտ այնպէս, ինչպէս որդին դիմում է իր հօրը։ Այժմ Ներսէս պատրիարքը նստաշրջանի բացման ճառի մէջ ներկայացնում էր հայկական այս ամենակարևոր գործի դրութիւնը բաւականաչափ սփոփիչ կերպարանքով։ Նա ասաց որ թէև 1872-ի տեղեկագիրը կորել էր Բ. Դրան թղթերի մէջ, բայց այժմ ինքն ստացել է գրական խոստումներ։ Յանձնաժողով է կազմուած, պիտի քննէ, տնօրինէ։

Այսպէս, ամեն ինչ ցոյց էր տալիս թէ հայերը հեռու էին կանգնած օրուայ քաղաքական շարժումներից։ Ներսէսի հաւաստիացումներից հազիւ մի օր անցած՝ սուլթան Աբդուլ-Ազիզը, տեղի տալով գիշեր ժամանակ կատարուած զինուորական յեղափոխութեան, գահընկեց եղաւ և մի քանի օրից յետոյ սպանուեց։ Գահն անցաւ Մուրադ հինգերորդին, որ սահմանադրական կարգեր մտցնելու խոստումներ արաւ։

Մայիսի 17-ի դաւադրութիւնը, որի զոհը դարձաւ Աբդուլ-

*) Տես «Համբաւաբեր» № 1։

ների բարեկարգութեան հարցը մշակելու համար։

Նոյեմբեր ամսին «Մշակի» խմբագիր Արծրունու նախաձեռնութեամբ Թիֆլիսի հայերը Փոխարքայի միջոցով մի ուղերձ ներկայացրին Ալէքսանդր Կայսրին, որով խնդրում էին նրան հրամայել որ դեսպանախորհրդի նիստերում քննուի և հայ ժողովրդի դրութիւնը Թիւրքիայում։ Բայց այս դիմումը, իբրև մասնաւոր մի նախաձեռնութիւն, հետևանք չունեցաւ։ Հայոց հարցը պաշտօնապէս բարձրացնելու բոլոր յարմարութիւնները տարիներից ի վեր տրուած էին միայն Էջմիածնին, բայց Գէորգ Դ. Կաթողիկոսը չը կարողացաւ ըմբռնել ժամանակի խորհուրդը, իր ժողովրդի շահերը և միանգամայն հեռու պահեց իրան այդ շարժումից։ Հարցը միջազգային հողի վրայ դնելու քայլեր արուեցին միայն Կ. Պոլսում, բայց առանց լուրջ պատրաստութիւնների, շատ միամիտ ձևով, որ քաղաքական տհասութեան բոլոր հանգամանքներն ունէր։ Հոկտեմբեր ամսին պատրիարքարանի շրջաններում խմբագրուեց մի դիմում, ուղղած մեծ պետութիւններին, որի մէջ յայտարարւում էր թէ հայերն էլ տանջւում են Թիւրքիայում, նրանք էլ իրաւունք ունին բարենորոգումներ պահանջելու, բայց երբէք չեն ուզում անջատուել Թիւրքիայից։ Վերին աստիճանի բնորոշ էր որ այսպիսի մի կարևոր թուղթ հայութեան անունից ներկայացնողը այդ ազգի մի պաշտօնական ներկայացուցիչը չէր, օրինակ մի պատրիարք, մի Ազգային Ժողով, այլ Լոնդոնում ապրող մի հնդկաստանցի հայ, Սէթ Աբգարը։ Այսպէս էր, անշուշտ, ներշնչել թիւրքական վախը։ Նոյն վախն էր, երևի, պատճառը, որ դիմումը չուղարկուեց ռուս կառավարութեան, որի ձեռքումն էր գտնւում Արևելեան հարցի ամբողջ հանգոյցը։

Դեսպանախորհուրդը բացուեց դեկտեմբերի երկրորդ կէսից, բայց հայերի հարցով չը զբաղուեց, այլ ինքնավարութեան ծրագիրներ մշակեց Բոսնիայի, Հերցեգովինայի և Բուլղարիայի համար։ Այդ ծրագիրները մերժուեցին Թիւրքիայի կողմից, որովհետև հենց այդ միջոցին էլ, երբ դեսպանախորհուրդը սկսում էր իր գործը, առանձին դղրդոցով յայտարարուեց Աբդուլ-Համիդեան սահմանադրութիւնը, որ յայտարարում էր թէ բարեկարգութիւնները բոլոր ազգերի համար են տրուած և աւելորդ է այլևս խօսել այս կամ այն նահանգի, այս կամ այն ազգի մասին։

Ներսէս պատրիարքը մինչև այդ դիմումներ արաւ անգլիական դեսպան Էլլիոտին։ Այդ դիմումները, նրանց լեզուն, նրանց ամբողջ բովանդակութիւնը բնորոշող մի վաւերագիր է մնացել, որ տպուած է անգլիական Կապոյտ Գրքի մէջ։ Դեսպան Էլլիոտը գրում էր արտաքին գործերի մինիստր լորդ Դերբիին դեկտեմբերի 7-ից. «Հայոց պատրիարքն երէկ զիս տեսնելու եկաւ։ Այցելութեան նպատակն էր, յանուն այն մեծ քրիստոնեայ հասարակութեան՝ որոյ գլուխն է ինքը, յայտնել ինձ իր յոյսը թէ դեսպանախորհուրդը չպիտի պնդէ որ Դուռն ապստամբեալ գաւառաց այնպիսի արտօնութիւններ շնորհէ, որք հանդարտ կեցող և նոյնչափ իրաւունք ունեցող ուրիշ հասարակութեանց զլացուին։ Հայոց ազգն, ըսաւ, խիստ գրգռեալ է և աւելցուց որ եթէ եւրոպական տէրութեանց համար ապստամբել հարկ է, այնպիսի շարժում մը կազմակերպել դիւրին բան չկայ»։

Այսքան ձախորդ կերպով էր դրւում մի ամբողջ ժողովրդի կեանքի և մահուան հարցը։ Ներսէսն այստեղ էլ շարունակում էր Օսմանեան կառավարութեան հայեացքները պաշտպանել և գրեթէ բանակռիւ էր մղում դեսպանախորհրդի դէմ, ուրիշ խօսքերով՝ ռուսական քաղաքականութեան դէմ։

Իսկ թիւրքական բիրտ իրականութիւնը ցոյց էր տալիս թէ ինչ գին կարող էին ունենալ այդպիսի դիմումները։ 1876 թ. դեկտեմբերի 1-ի գիշերը թիւրքերը կրակեցին Վանի շուկան, ուր այրուեցին մօտ 2000 հայ խանութներ։ Աղէտը սոսկալի էր և նրան ողբաց Խրիմեան Հայրիկը իր սրտառուչ «Վանգոյժի» մէջ։ Վանի հայ ժողովուրդը մի գիշերուայ մէջ աղքատութեան անդունդը գլորուեց։

Վանի սոսկալի բոցերն ու մոխիրներն էին մտցնում հայութիւնը 1877 թուականի մէջ։ Բայց նրանք դեռ հայ տառապանքի նախերգանքն էին։ 1877 թուականը բերում էր աւելի մեծ աղէտ—ռուս-թիւրքական պատերազմը։

(Վ ե ր ջ) Լ Է Օ

---

## † ԱԲԳԱՐ ԱՆԱՆԵԱՆ

(31 դեկտեմբ. 1916)

Մեր առևտրական դասից նշանաւոր հարուստներ ինչպէս հնում առ հասարակ, մասամբ և այժմ չեն մոռանում իրենց ազգայիններին մասն ու բաժին հանելու յատկապէս նրանց զաւակների կրթութեան գործին։ Այսպիսիներն իրաւամբ կարող են մեր փոքր ազգի համար փոքրիկ մեկենասներ կոչուել, ինչպէս Լազարեան, Սպարթալեան, Սանասարեան, Ժամհարեան են։

Այսպէս էլ Ցոփանեան կամ Անանեան տունը։

Նորոգ հանգուցեալ Աբգարի հօրեղբայրը հիմնեց Ցոփանեան միջնակարգ օրիորդաց դպրոցը, կանգնելով յաւերժական մի յուշարձան իւր և ընտանիքի յիշատակին, որ անմոռանալի պիտի մնայ հայ, մանաւանդ մատաղ սերնդի սրտում։

Իսկ հանգուցեալի հայրը, Աղէքսանդր Անանեանը, որ Կ. Հ. Բ. Ը-թեան բարերարներից մին է կոչւում իրաւամբ, իւր կենդանութեան ժամանակ նուիրեց 20,000 ռ. և մահից յետոյ 10,000 ռ. դպրոցներին նպաստ տալու։

Աղէքսանդր Անանեանը Կ. Հ. Բ. Ը-թեան հիմնուելու օրից 1881-ից ընտրուելով Խորհրդի նախագահ, այդ պաշտօնը վարել է մինչև 1899 թուականը։



ԱԲԳԱՐ ԱՆԱՆԵԱՆ

Թէ ինչ նշանակութիւն է ունեցել Աղէքսանդր Անանեանցի գործունէութիւնը և որքան օգտակար Ը-թեան համար, այդ երեւում է 1896-ին նորա հրաժարականի առթիւ Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդի որոշումից։

«Ի նկատի առնելով նրա բազմամեայ գործունէութիւնը յօգուտ Ընկերութեան և այն հանգամանքը, որ նա Ընկերութեան հիմնարկութիւնից ղեկավարել է իբրև Խորհրդի նախագահ և որ նրա հեռանալը կարող է միանգամայն վնասել Ընկերութեան շահերին, որոնց նա այդքան տարի եռանդով նուիրել է իւր ույժերը, միաձայն որոշում է խնդրել նրան յետ վերցնել իւր հրաժարականը»։



ԱՂԷՔՍԱՆԴՐ ԱՆԱՆԵԱՆ

Բ.

Ահա այսպիսի նախորդներ ունէր նորոգ հանգուցեալ տոհմական պատուաւոր քաղաքացի Արգար Անանեանը։ Սա ևս բարեգործական նպատակների համար կտակեց մօտ 200,000 ռ., որից 126,000 ռ. Կ. Հ. Բ. Ընկերութեանը, որից 106,000 ռ. միջնակարգ և բարձրագոյն դպրոցներում ուսանողներ պահելու համար, իսկ 20,000 ռ. գրագիտութիւն տարածելու։

Հանգուցեալը ծնուել է 1863 թուականի մարտի 25-ին։ Սկզբնական կրթութիւն ստացել է Թիֆլիսի ռէալական դպրոցում, բայց աւարտեց Վլադիկաւկազի ռէալական դպրոցը։ Յետոյ մտաւ Նոր-Ալէքսանդրեան գիւղատնտեսական ճեմարանը, ընտրելով անտառային ճիւղը, որն աւարտելով անցաւ Պետրօգրադ և մտաւ Անտառային Ճեմարանը։

1898 թուականին աւարտելով ճեմարանը վերադարձաւ իր կալուածքը, Բաթումի նահանգի Վարցիխէ գիւղի մօտ։

Հանգուցեալը համաձայն իւր հօրեղբօր կտակի, իբրև աւագ Անանեան տոհմի, պատուաւոր հոգաբարձու էր Յովնանեան օրիորդական դպրոցի, բայց չէր կարողանում նիստերին յաճախել նախ Թիֆլիսից յաճախ բացակայելու պատճառով և երկրորդ՝ ինչպէս հանգուցեալն էր յայտնում, անյարմար էր գտնում, հայերէն չիմանալու պատճառով, առաջնորդի, մայրապետի և միւս հոգաբարձուների ներկայութեամբ ժողովին իր մտքերը օտար լեզուով արտայայտելու։

Չնայելով հանգուցեալը իրենից անկախ պատճառաւ հեռու էր հայկական կեանքից, իւր բարենպատակ կտակով ցոյց տուեց որ սերտ կապուած է մնացել հայ ազգին և իւր ընտանիքի ազգային ոգու աւանդութեան, որ իւր ազգային մեկենաս հօրեղբօրից յետոյ սրբութեամբ պահում է։

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԸ 1916 Թ.*)

II

Ներկայ պատերազմը իր անօրինակ ծաւալով—դրամական և մարդկային զոհերով—ամբողջովին ծանրանալով ժողովուրդի վրայ՝ հրամայական անհրաժեշտութիւն է դարձնում հենց իր ժողովուրդի անմիջական մասնակցութիւնն ու հսկողութիւնը պատերազմի անցուդարձի վրայ։ Այս կարիքը զգացին եւրոպական պետութիւնները հենց պատերազմի սկզբին և կառավարութեան մասնակից արին ժողովրդի ներկայացուցիչներին ու կամաց կամաց զօրեղացրին ժողովրդական հսկողութիւնը կառավարութեան քաղաքականութեան վրայ։ Պարլամենտական կարգով պատասխանատւութեան էին կանչւում և հեռացւում ժողովրդական ներկայացուցչութեան վստահութիւնը չվայելող նախարարութիւնն ու իր քաղաքականութիւնը։ Միայն կիսապարլամենտական երկիրներում, որպիսին և մերն է, հասարակական և քաղաքական ուրոյն պայմանների շնորհիւ՝ շարունակուեց նախկին անպատասխանատու քաղաքականութիւնը։ Սակայն այն՝ ինչ հնարաւոր էր խաղաղ ժամանակ՝ անհնարին ու անտանելի էր դառնում պատերազմի միջոցին։ Պատերազմը այստեղ ևս հրամայական անհրաժեշտութիւն է դարձնում կառավարութեան պատասխանատւութիւնը Դումայի առաջ։

Եւ հասարակական կարծիքի այդ ճնշման ազդեցութեան տակ գումարուեցին օրէնսդրական հաստատութիւնները և հեռացուեց աւագ նախարար Շտիւրմէրը։ Ռուսական սահմանադրութեան տարեգրութեան մէջ առաջին անգամ երկու հաստատութիւններն էլ միաձայն դատապարտեցին կառավարութեան արտաքին և ներքին քաղաքականութիւնը և շեշտեցին պատասխանատու և միացեալ կառավարութեան անհրաժեշտութիւնը։—«Պետական Դումայի առաջնակարգ պարտքն է հանդարտ և մանրազննին գնահատել դրութիւնը, անմիջապէս հեռացնել այն, ինչ չպիտի լինի և ինչ խանգարում է երկրին հասնելու առաջադրուած նպատակին», ասաց Դումայի նախագահը իւր բացման ճառում։ Սակայն Դուման անզօր գտնուեց կատարելու իւր վրայ դրուած ծանր պարտականութիւնը։ Նա չկարողացաւ երկրի մասին ամբողջ ճշմարտութիւնն ասել, մի անգամ ընդմիշտ դատապարտել «հին կարգն» ու կառավարութիւնը և ժողովրդի վստահութիւնը վայելող նախարարութիւն կազմել։ Ճիշտ է կասկածելի Շտիւրմէրին փոխարինեց Տրեպովը, բայց իրողութեան մէջ ոչինչ չփոխուեց։ Տրեպովը միայն վերանուանումն էր Շտիւրմէրեան նախարարական դահլիճի։ Փոխուեց անհատը, բայց կարգը—սիստեմը մնաց նոյնը։ Իսկ բոլորն էլ զգում էին, որ էականն ու գլխաւորը ոչ թէ անհատ-նախարարների փոփոխութիւնն է, այլ ամբողջ սիստեմի։

Բայց այդ բանի համար Դուման հարկաւոր ուժն ու զօրութիւնը չունէր։ Նա պարլամենտարական դեր կատարել—պատասխանատու նախարարութեան պահանջը իրագործել չէր կարող։ Հակառակ Դումայի մեծամասնութեան պահանջին՝ նոր նշանակուած աւագ նախարարը իր կառավարութեան ընթացքի ու ծրա-

*) Տես «Համբաւաբեր» № 1։

գրի յայտարարութեամբ—դեկլարացիայով ոչ մի խօսք չարաւ պատասխանատու նախարարութեան և «նոր ընթացքի» մասին։ Նա հանդէս եկաւ մի շատ հին, ծանօթ ու դատապարտուած ծրագրով և նոր ոչինչ չէր խոստանում.—«Իմ այսօրուայ յայտարարութեան մէջ մի փնտրէք առաջիկայ տարիների ընթացքում կառավարութեան գործունէութեան ամբողջական ծրագիրը»։ Դուման էլ բաւականացաւ լոկ ճարտասանական մարզանքներով, չըկարողացաւ հարկաւոր գործնական քայլն անել։ Կառավարութիւնն էլ շատ լաւ գիտէր, որ Դուման մի այնպիսի հասարակական ոյժ չէ, որին կարելի չլինէր արհամարհել։ Հակառակ պատմութեան ծանր դասերին՝ իր ներկայ կազմով ռուսական quasi-պարլամենտը (իբր—պարլամենտ) հասարակական ազդեցիկ գործօն չէ. և նա պարլամենտարական դեր կատարել—ամբողջ ժողովրդի կամքի արտայայտիչը հանդիսանալ ու կառավարութեան վրայ ազդել չկարողացաւ։

Եւ չնայած որ նոյն իսկ աջակողմեանները պահանջում էին պատժել «Թիկունքի թալանչիներին ու դաւաճաններին», չնայած որ նոյն իսկ Պետական Խորհուրդը յայտարարեց, որ «հայրենիքը վտանգի մէջ է» նաև ներքուստ, և բոլորն էլ զգում էին, որ ով Շտիւրմէրի հետ է՝ նա դէմ է Ռուսաստանին,—բայց և այնպէս Դուման իր բարձրագոչ խօսքերից չկարողացաւ գործի անցնել։ Նա, ճիշտ է, շատ վէրքեր բաց արեց և ցոյց տուեց, որ պարենաւորման գործի և երկրի տնտեսական քայքայման բուն պատճառները «հին կարգն» է, բայց ամեն ինչ մնաց այնպէս, ինչպէս որ կար։ Եւ վերջապէս Ռուսական ինքնօրինակ «պարլամենտի» նստաշրջանը փակուեց տօներից առաջ միանգամայն հակապարլամենտական կարգով՝ նոր տարուայ սկզբին վերսկսելու համար։

Եւ այդ նստաշրջանից մնացին մի քանի բարի ցանկութիւններ ու գեղեցիկ խօսքեր. նախ՝ Դ ու մ ա յ ի ընդունած բանաձևը. 1) «Մութ և անպատասխանատու ոյժերը պէտք է չէզոքացուին. 2) Պէտք է Դումայի վստահութիւնը վայելող միութեան դահլիճ կազմել»։—«Այսպիսի կառավարութեան հետ մենք աշխատել չենք կարող, որովհետև վստահ չենք, որ նրա հետ երկիրը կը հասցնենք յաղթանակի... Այս կերպով ներկայ կառավարութիւնը չէ կարող վճռել և ոչ մի հարց, որ առաջադրել է մեծ պատերազմը։ Միակ ելքն է—ստանալ մի կառավարութիւն, որ վայելէր երկրի վստահութիւնը»—Մ ի լ ի ւ կ ո վ։—«Ժողովուրդը կըգնայ միայն այն կառավարութեան յետևից, որ վայելում է ժողովրդի վստահութիւնը»—Ռ ո դ ի չ և։—«Ռուսաստանի ներկայ պատմական ժամին հայրենիքը հրամայաբար պահանջում է կառավարութեան և օրէնսդրական հաստատութիւնների համերաշխ գործակցութիւնը. և աշխատանքի այդպիսի համաձայնութիւնը ապահովելու համար անհրաժեշտ են, առաջին՝ պետական գործերի վրայ ազդեցութիւնից բոլորովին հեռացնել ծածուկ և անպատասխանատու անձերին, և երկրորդ՝ կազմել աշխատանքի ընդունակ մի կառավարութիւն, որ իրապէս համերաշխ լինի, միացած որոշ ծրագրով, յենուած երկրի վստահութեան ու համակրութեան վրայ և այսու իսկ օրէնսդրական հիմնարկութիւնների հետ գործակցութեան ընդունակ»—Պ ե տ ա կ ա ն Խ ո ր հ ու ր դ։

Նոյնպիսի եզրակացութեան է յանգում Դուման նաև Ռուսաստանի ներքին կեանքի ամենացաւոտ հարցի—պարենաւորման խնդրի վերաբերութեամբ. մի շարք արմատական միջոցներ առաջարկելով՝ դեկտ. 5-ին Դումայի մեծամասնութեան կողմից ընդունուած բանաձևը վերջանում է հետևեալ խօսքերով. «յիշեալ բոլոր միջոցների գործադրութեան համար պահանջւում է, որ իշխանութիւնն ամենասերտ գործակցութիւն ունենայ երկրի բոլոր հասարակական ոյժերի հետ, որ անհնար է առանց պետութեան ներքին քաղաքականութեան վճռական փոփոխութեան, առանց միացած կառավարութեան, առանց հասարակութեան վստահութեան դէպի կառավարութիւնը և առանց օրէնսդրական հիմնարկութեան մեծամասնութեան կողմից կառավարութեան գործունէութեան հաւանութիւնը գտնելու»։

Ահա թէ ինչ ասաց Ռուսաստանի ներկայ ճակատագրական կացութեան մասին «ժողովրդական» ներկայացուցչութիւը։ Նա ցոյց տուեց՝ թէ ինչպիսի ներքին ճգնաժամի ու քայքայման մէջ է ռուս պետութիւնը և մատնանշեց այն միջոցները, որոնցով կարելի էր փրկել երկիրը վերահաս վտանգից։ Սակայն որոշման միակ պատասխանը եղաւ Դումայի հակապարլամենտական ձևով փակելը և կառավարութեան ղեկը մի աւելի պահպանողական նախարարութեան յանձնելը։

Սակայն ակնյայտ է, որ այդպիսի միջոցներով երկիր «փրկել և խաղաղացնել» չի կարելի։ Պատերազմը մի շարք հրամայական հարցեր է առաջադրել ռուս պետութեան, որոնք իրենց լուծումն են պահանջում տիրաբար։ Հենց օր.—պատերազմական ծախսերը. միլլիարդների պարտքը իրենց հսկայական տոկոսներով, արտակարգ միջոցներով և տնտեսական ու քաղաքական կեանքի արմատական բարեփոխութիւններով միայն հատուցուել կարող են։

Ահա այսպիսի ծանր ու ճակատագրական պայմաններում է ռուս պետական կեանքը նոր տարուայ շէմքը թևակոխում։ Յուսանք, որ այս նոր տարին նրա համար վերջին փորձութեան ու փրկութեան տարին կլինի։

Վ. Խ.

---

ՈՐԲԵՐԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ

Համաշխարհային գրականութեան մէջ չտեսնուած բանաստեղծութիւններ էին, որոնց նուիրական տպաւորութեան տակ մնացինք սրտի վարանոտ զգացմունքներով այն գրական երեկոյթին, երբ պ. Կ. Միքայէլեանը կարդաց իր մեղուաջան աշխատանքով հաւաքած զարմանալի արգասիքները տարագիր երեխաների և իր պատկերաւոր լեզուով վերարտադրեց նրանց պատմածները ահաւոր օրերից։ Այդ երեկոյթին ես էլ խօսք առնելով մի երկու դիտողութիւն արի, որ ես կուզէի աւելի մանրամասնելով ներկայացնել որբերի կրթական գործով միջնորդապէս կամ անմիջականապէս պարապած մարմիններին ու անհատներին։

Վերև ասեցի, որ վարանոտ զգացմունքներով լսեցինք այդ մանկական թոթովանքը, որ կարծես մեծցած-պառկցած մանկանց անհուն տառապանքի ժայթքումները լինէին։ Բայց ինչու վարանոտ զգացմունքներ առաջացան մեր մէջ մանկական աշխարհի այդ արգասիքների տպաւորութիւններից. մի կողմից մենք հրճւում էինք, որ մեր երեխաները, մեր հին կուլտուրական տաղանդով օժտուած ցեղի այս դեռահաս սերունդը, իբրև իրենց նախահայրերի արժանաւոր ժառանգ, հոգեբանական հնարաւորութիւն են ունեցել իրենց անմեղ թոթովանքով արտայայտելու համաշխարհային վշտի յուզումնալից բեկոր հայկական վիշտը. միւս կողմից սոսկալի ճնշւում էին մեր սրտերն այն վարկեաններին, երբ մենք մտածում էինք, թէ որքան ահաւոր են եղել այն սարսափները, որ լեզու են տուել մանուկներին։ Այդ երեկոյթին ես ի միջի այլոց ասեցի. «երբ մարդիկ լռում են, քարերն են խօսում», և ահա այս անգամ Հայաստանի քարերի խօսքը լսելու դեռ պատեհութիւն չունեցած՝ մենք լսեցինք տառապանքի բովից մասամբ ազատուած մանկական աշխարհի սրտաճմլիկ ճիչը, նրա խղճն ու փափագը։ Ի հարկէ, այստեղ խօսքը բանաստեղծական լեզուով խօսելու մասին է։ Ողբշունչ խօսքեր ասացին նաև օտար բանաստեղծներ, ինչպէս օրինակ Բրիւսովն ու Նեմիրովիչ-Դանչենկոն պատճէն առիթներով. բայց ինչու լռում են հայ բանաստեղծները, արդեօք զարմանալի չէ՞։ Ինչու օր. Յովհաննէս Թումանեա-

նը նոյնպէս յանել է, որ այնպէս անձնուիրութեամբ իր կեանքը վտանգի ենթարկելով իր դստեր հետ շտապեց «Վշտի հովիտը» հենց որ Վանից ահաւոր փախուստի լուրն առաւ։ Պարզ էր, և այն երեկոյ նա ակնարկեց, որ տակաւին կարողութիւն չունի իր տեսած ու լսած սարսափները գրչով արտայայտելու։ Շատ են նրանք ու շշմեցուցիչ, որ հայ բանաստեղծը հիմա արտայայտելու ոյժ զգար իր մէջ։

Народъ-художникъ (*ժողովուրդ-գեղարուեստագէտ*) խօսքով էր բնորոշել մեզ ռուս տաղանդաւոր Բրիւսովը։ Ինչ կասկած նաև մեր անցեալով հետաքրքրուող օտարները, եթէ մեր որբերի բանաստեղծութիւնները թարգմանուէին և աւելի մշակուած չափական ձևերով ներկայացուէին նրանց։ Պ. դասախօսի վերարտադրած պատկերներում կան նաև սարսուռ ազդող տողեր, որոնց միջոցով նկարագրւում է, թէ ինչպէս հայ երեխան մորթել է քուրդ երեխաներից մէկին, միւսին վիրաւորել։ Դժողքի սոսկումներից հրաշքով ազատուած, վրէժխնդրութիւնից խելայեղ երեխան միայն կարող էր այդպիսի ոճրագործութեան դիմել։ Բայց եւրոպացիք շատ էլ չեն զարմանայ, շատ էլ իրաւունք չեն ունենայ վրդովուելու, քանի որ իրենց կեանքում տնտեսական անդունդի զոհ դարձած փողոցային ոճրագործ երեխաների թիւը տարէց տարի աւելանում է։ Սակայն ինչ համեմատութիւն այն և մեր որբերի դրութիւնների։ Բայց և այնպէս այդ երեկոն ես յուզուած իբրև ուսուցիչ կոչ արի ներկայ եղող գաղթական ուսուցիչներին, որ նրանք զգուշանան խրախուսելուց ոխակալութեան ոգին մանկական աշխարհում, որովհետև, աւելացրի, եթէ մենք այն քնքոյշ ծաղիկների մէջ թոյն կաթեցնենք, նրանք պտղի տեղ տատասկ կըտան։ Բարու, գեղեցկի երգիչների զգացմունքները շատ շուտ կըբթանային և ցաւալի հիասթափութեան տեղի կըտային։ Բազմաթիւ լսողների նշանացի վերաբերմունքը ցոյց տուեց, որ ես նրանց սրտից էի խօսում։

Յ. Տէր-Միրաքեան

## ԳՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՆԵՐ

Դեկտ. 30-ին (1916) Հայ Գրողների Ը-թեան հերթական երեկոյթում պ. Սուրխաթեան դասախօսեց Հայոց Նոր բանաստեղծութեան մասին։

Դասախօսը բացատրեց, թէ ինչպէս վերջին մի քանի տասնամեակներում, մեր իրականութիւնը և հասարակական կեանքը՝ աստիճանաբար թեքուել է դէպի քաղաք։ Նոր երևոյթների պայմանաւորւմով հրաժեշտ է տրուել նահապետական կենցաղին, գիւղի և քաղաքի պայքարը վերջացել է երկրորդի յաղթանակով։

Այդ իրականութեան համապատասխան՝ մեր նորագոյն բանաստեղծութեան մէջ առաջ են եկել նորագոյն հոսանքներ։ Բանաստեղծութեան մէջ սկսել է մուտք գործել տարակուսանք և վարանում։

Բանուորական շարժման հետ կապ ունեցող բանաստեղծութիւնը եղած է աւելի թոյլ և անկերպարան։ Այդ հոսանքի արտայայտիչն են մեր մէջ Շուշանիկ Կուրղինեան և Յ. Յակոբեան։

Նոր կեանքի հանդէպ արտայայտուած ափսոսանքի, անէծքի և խարանումի և ապա շուարումի ու տարակուսանքի բանաստեղծները եղան Ա. Իսահակեանը և Վ. Տէրեանը։ Վերջինս արտայայտիչն է հայ բանաստեղծութեան բնական զարգացման։ Նա ընտելացաւ քաղաքին, բայց մենակ զգաց իրեն։ Տէրեանի ապրումները յատուկ էին շատերին։ Ուստի և նրա քնարերգութիւնը հասարակական խոր բովանդակութիւն ու արժէք ունի։

Տէրեանը օժտուած է մեծ քաղաքի ջղային մտաւորականի բարդ հոգեբանութեամբ։ Ազդուած է ռուս ու օտար բանաստեղծներից, ինչպէս Բրիւսովից, Վէրլէնից ևն։

Բնորոշելով Տէրեանի բանաստեղծական դէմքը, խօսելով այն գոյների, հնչիւնների ու ներկերի մասին, որոնք առանձնայատուկ են դարձնում նրա քնարական գործերը, դասախօսն անցաւ բանաստեղծի արուեստին։

Ըստ դասախօսի Տէրեանը հայ բանաստեղծութեան արուեստը մշակում է և կատարելագործում այժմ։

Տէրեանի, որպէս ինքնուրոյն տաղանդի, այս յատկութիւնները երևալը անհետևանք մնալ չէր կարող, և նա ունեցաւ բազմաթիւ հետևորդներ։ Նա բերաւ մենութիւն, շուարում, երազանք և պատրանք։ Տէրեանի հետևողներից են Լէյլի, Արմ. Տիգրանեան, Խանլարեան, Գ. Ղազարեան, Բոբեան, Պահարէ և ուրիշները, որոնք թէև սկսնակ և հեռաւոր բանաստեղծներ են, բայց ունին շնորհ և ընդունակութիւն. իսկ Գ. Բեալաչեանին, Վ. Ադասեանին, Սար-Յով-ին և Շահինեանին համարեց ոչ հեռաւոր Տէրեանի ուղղութեան։

Դասախօսութիւնից յետոյ սկսնակ բանաստեղծներին ջերմ և յուզումնալից խօսքեր ուղղեց Յովհ. Թումանեան։ Ապա եղաւ վիճաբանութիւն, որին մասնակցեցին Մառէնձեան, Դէմիրճեան, Ճերմակ, Վալադեան, Ֆէթվաճեան և Թորգոմեան։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է՝

—Գ. պ. Գասպար Տէր-Մարգարեանից իւր նպաստով պահուող «Շրվինանց» գիւղի ներկայ ուսումնարանական տարուայ բ. կիսամեակի նպաստը 1550 ռ. և «Համբաւաբեր» շաբաթաթերթի մի տարուայ գինը 4 ռ. նոյն գիւղին ուղարկելու։

—Ներսէս Աբէլեանից, իւր դստեր «Անահիտեան» անուան գրադարանի օգտին 100 ռ.։

—Լոզովայեա կայարանից Կ. Մարտիրոսեանից յօգուտ գաղթականների 40 ռ.։

—Յովհ. Յակոբեանից յօգուտ որբանոցի 200 ռ.։

—Գր. Ջիբուխչեանից յօգուտ տեղական չքաւորների 15 ռ. և յօգուտ գաղթականների 15 ռ., ընդամենը 30 ռ.։

—Յովհ. Դաւթեանից յօգուտ ճաշարանիս ճրագալոյծին ճաշ տալու 50 ռ.։

—Թեմիր-Խան-Շուրայից պ. Հմ. Աղէկեանից յօգուտ գաղթականների 25 ռ.։

—Սկվիրայից Սահ. Մելիքսեդեկեանից յօգուտ գաղթականների 50 ռ.։

—Արհեստաւորների ակումբից (կլուբից) յօգուտ հիւանդանոցի պահպանութեան 300 ռ.։

—Անյայտից յօգուտ չքաւորների 3 ռ.։

—Թիֆ. ա. մասնաւոր գրաւատնից (լոմբարդից) յօգուտ հիւանդանոցի 10 ռ. 22 կ.։

—Հանգ. Վ. Ս. Եղիազարեանի ընտանիքից յօգուտ չքաւորների 50 ռ.։

—Թիֆլիսի ժողովարանից յօգուտ ճաշարանի 500 ռ.։

—Եկատերինէ Մանդինեանից ի յիշատակ իւր որդի Եազոնի յօգուտ ճաշարանի 10 ռ.։

—Կ. Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարանի 150 ռ.։

—«Кавк. Слово»-ի խմբագրութիւնից յօգուտ փախստականների 110 ռ.։

—Ս. Տէր-Օզանեանից յօգուտ չքաւորների 3 ռ.։

* * *

—Խորհուրդս շնորհակալութեամբ ստացել է պ. Գէորգ Թորոսեան Իլլէեանից իւր հօր՝ ներկայ տարուայ յունուարի 6-ին

Թիֆլիսում վախճանուած հանգուցեալ Թորոս Համբարձումեան Իլլէեանի յօգուտ Ընկերութեանս կտակած 500 ռ. և յօգուտ Ընկերութեանս Ալէքսանդրապոլի ճիւղի 300 ռ., ընդամէնը 800 ռ.։

### ՃԻՒՂԵՐ

Խոնարհաբար խնդրում ենք զետեղել պատուական թերթիդ համարներից մէկում հետևեալը.

Կ. Հ. Բ. Ը-թեան Բաթումի վարչութիւնը յօգուտ իր տնօրինութեան տակ գտնուող որբանոցի շնորհակալութեամբ ստացել է «Մշակ»-ի խմբագրութեան միջոցով հետևեալ նուիրաբերութիւնները.

1. Յովհաննէս և Պետրոս Տիլէնեանից Եկատերինոդարում հանգանակած 260 ռ. 60 կ., 2. Բաղդասար Զոլախեանից, Մարդանակի (Կուրանի շրջան) հաւաքած 1000 ռ., 3. Յակոբ Տէրտէրեանից, Բաթում, 233 ռ., ընդամէնը 1,493 ռ. 60 կ., որից «Մշակ»-ի խմբագրութիւնը փոխադրութեան և այլն ծախսել է 3 ռ. 60 կ., մնացորդը 1490 ռ. փոխադրել է մեզ։

* * *

Ախալցխա.—Վարչութիւնս շնորհակալութեամբ ստացաւ հանգուցեալ Գրիգոր Քուփալեանի յիշատակին, նրա ժառանգ՝ Ընկերութեանս անդամ Մ. Քուփալեանից ի միջի այլոց 300 ռ. իբրև անձեռնմխելի գումար, որի տոկոսով հանգուցեալի անունով պահուի մի խեղճ աշակերտուհի քաղաքիս Եղիսաբէթեան դպրոցում, 100 ռ. ճիւղիս որբանոցին, 100 ռ. էլ ճիւղիս Աղքատախնամ Մասնախմբին տեղական կարօտեալներին բաժանելու։ Հանգուցեալի այրին՝ տիկ. Մ. Քուփալեանը և եղբայրը՝ Դաւիթ Քուփալեանը նոյնի յիշատակին նուիրեցին ճիւղիս որբանոցին՝ առաջինը 50 ռ., երկրորդը 100 ռ.։

### ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Գաղթականական մասնաժողովի միջոցաւ 1916 դեկ. 25—31-ը վճարել է 53 կոյր անկեալ հիւանդ գաղթականների 160 ռ. 68 կ. նպաստ։

## Քրոնիկոն

Դեկտեմբերին Կ. Հ. Բ. Ը.-թեան ընթերցարանը յաճախել են 4,734 հոգի, որից 2,655 այր-մարդ և 2,074 կին-մարդ։ Այդ ժամանակի ընթացքում գրադարանից տրուած է կարդալու համար 5,073 գիրք, որից 3,774 հայերէն և 1,299 ռուսերէն։

—

Մայրապետ կոյս Հռիփսիմէ Թայիրեանի դիմումի համաձայն՝ Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը Շիրինեան գրադարանից մէկը յատկացրել է Կոջորի դպրոցին։

—

Առևտրա-արդիւնաբերական նախարարութեանն է ներկայացուած «Թիֆլիսի շինարարական ակցիոներական ընկ.» կանոնադրութիւնը ի հաստատութիւն։ Ընկերութեան նպատակն է Թիֆլիսի, Քութայիսի նահանգներում և Բաթումի շրջանում կատարել հողերի ոռոգման, հողագործութեան և անջրդիացման աշխատանքներ և կառուցել երկաթուղի, ելէքտրաքարշ և ամեն տեսակ ելէքտրական ձեռնարկութիւններ։ Նոր ընկերութեան սկզբնական հիմնական դրամագլուխն է մի միլիոն ռուբլի, որ բաժանուած է 10,000 ակցիաների՝ իւրաքանչիւրը 100 ռ.։

—

Քաղաքային վարչութեան որոշմամբ բացւում են քաղաքային պարենաւորման 3 խանութ, մէկը ելէքտրաքարշի գլխաւոր կայանում, երկուսը՝ Հաւլաբարում, որով քաղաքային կենսամթերքների խանութների թիւը հասնում է 20-ի։

—

Սոյն յունուարի 1-ից բացուեց Կ. Հ. Բ. Ընկերութեան Շուլաւերի ճիւղի ընթերցարանը։

—

Կիրակի, յունուարի 8-ին տեղի ունեցաւ Ա. Անանեանի թաղումը Վերայի գերեզմանատան տոհմական դամբարանում։ Ներկայ էին բարեգործական, դպրոցական, հասարակական հիմնարկութիւնների և ընկերութիւնների ներկայացուցիչները և խուռն բազմութիւն։ Դրուած էին բազմաթիւ պսակներ, որոնց թւում Կ. Հ. Բ. Ընկերութեան կողմից արծաթէ պսակ։

—

Կ. Հ. Բ. Ը.-թեան Թելաւի ճիւղի վարչութեան խնդրի համաձայն, պ. Արշակ Պետրոսեան Ունանեանցը յանձն է առել այս յունուարից բանալու դպրոց իւր ծախքով Թելաւի գաւառի Մատանի վրացախօս գիւղում, որ ունի 2400 հայ բնակիչ։

## Արտաքին տեսութիւն

### ԻՆՉՈՒ ԳԵՐՄԱՆԻԱՆ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ Է ԱՌԱՋԱՐԿՈՒՄ

Լրագրերը զանազան բացատրութիւններ են տալիս, թէ ինչու Գերմանիան ինքը առաջարկութիւն է անում։ Այդ բացատրութիւնների մէջ չկան այն ներքին պատճառները, որոնք յայտնի զօրեղ դեր են խաղում այս անսպասելի առաջարկութեան գործում։

Խնդիրը այն է, որ Գերմանիայի յաղթութիւնները երևոյթական են, և եթէ խորը քննենք, կըտեսնենք, որ այդ յաղթութիւնները բացատրւում են շատ հասկանալի պատճառներով և ոչ Գերմանիայի անպարտելի ոյժով բացառապէս։ Գերմանիան նախ տիրեց Բելգիային, որ միջազգային դաշնագրութեամբ անձեռն մի չէզոք պետութիւն է, որ կարիք չունէր պատրաստ լինելու այսպիսի մի ապօրինի և տմարդի յարձակման դէմ։ Այստեղից մտաւ Ֆրանսիա, երբոր Ֆրանսիայի զօրքերի զօրահաւաքը (մոբիլիզացիան) վերջացած չէր։ Գերմանիան ուրեմն ոյժ չունէր մտնելու Ֆրանսիա Գերմանիայի սահմանակից հողերով, ուր ֆրանսական բերդեր կան։ Ռուսաստանում Գերմանիան գրաւել է 16 նահանգ, բայց ազգագրական Ռուսաստան չի կարողանում մտնել, այլ նուաճել է այն նահանգները, ուր ժողովուրդը և ազգաբնակութիւնը ահագին տոկոսով ռուս չէ։ Այս շատ նշանակալից երևոյթ է։

Այս չի նշանակում ի հարկէ, թէ Լեհաստանի և Արևմտեան գաւառների լեհ, հրէայ, գերմանացի ժողովուրդը նպաստում էր Գերմանիային. բայց այս հանգամանքը նշանակում է, թէ տեղական ազգաբնակութիւնը պարտիզանական կռիւ չի մղել թշնամու դէմ, որ անպատճառ կսկսուի, երբոր թշնամին կըմտնի բուն Ռուսաստան։ Մեծ Նապոլէոնն էլ խորտակուեց միայն, երբոր մտաւ բուն Ռուսաստան։ Ահա այժմ գերմանացիք կանգնած են Ռուսաստանի սահմանում և ոչ մի քայլ առաջ չեն գընում մտնելու ազգային Ռուսաստանի խորքերը։ Արևմտեան ճակատում ևս ոչ մի քայլ թշնամին չի առաջանում։ Ռումինիայի մասին կարելի է չխօսել, որովհետև միայն երեխան կարող է կարծել, թէ Ռումանիան պիտի դիմադրէ Գերմանիային։ Եթէ Ռումանիայի կառավարութիւնը տարիներով խաբում էր երկու կողմերին էլ՝ ինչպէս կարելի էր ուրեմն կարծել, թէ այդ պետութեան զօրքը և զօրավարները կատաղի կռիւ պիտի մղեն Գերմանիայի դէմ։ Ապագան գուցէ շատ գաղտնիքներ երևան հանի այս խնդրի վերաբերեալ։ Եթէ այս բանի վրայ աւելացնենք, որ

Գերմանիան ոչ մի յոյս չի կարող ունենալ ծով դուրս գալու Անգլիական և Ֆրանսիական նաւատորմիղի հետ պատերազմելու, որ Գերմանիայի բոլոր գործարանները պիտի անգործ մնան մինչև պատերազմի վերջը՝ այն ժամանակ հասկանալի կլինի նրա առաջարկութեան միտքը։ Շատ շուտով մենք ականատես կլինենք, որ Գերմանիան զիջողութեան սահմանները շատ կընդարձակի, որովհետև ներկայ վայրկեանը նրա համար դեռ նպաստաւոր է փըրկուելու աւելի մեծ վտանգներից։

Գ. Ենգիբարեան

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ 1916 ԹՈՒԱԿԱՆԻՆ

Տաճկահայոց խնդիրը շուտով մօտենում է իր քառամեակին։ Անցնելով հանգրոյցէ հանգրոյց, որոնք ըստ մեծի մասին նշանաւոր էին դառնում տաճկահայերի նախընթաց և կամ յետընթաց կոտորածներով, մինչև վերջին համաշխարհային պատերազմին, շնորհիւ արդէն երիտասարդ թուրքերի դժոխային ծրագրի հայ ժողովուրդը բնաջնջման է ենթարկւում 1915 թուականից։

Այս անլուր և անպատմելի արհաւիրքների մանրամասներն հետզհետէ երևան եկան 1916 թուականին և հաստատւում են «չըմեղիկ» Թալէաթ-բէյի խոստովանքով («Համբաւաբեր» համար 22), որ առանց այդ էլ շատ պարզ էր։ Թուրքերը ճգնեցին և պաշտօնական գրութեամբ միամիտներին հաւատացնել իրենց «Սպիտակ» գրքով, որ հայերը ապստամբել են, նոյն իսկ Ադանայի կոտորածը կազմակերպել (№ 29) հակառակ իրենց տարիներ առաջ արած յայտարարութեան, հայերի անմեղութեան (№ 33)։ Այս բոլորից յետոյ երիտասարդ թուրքերը ջնջեցին հայոց սահմանադրութիւնն ու պատրիարքութիւնը և հայերն այլևս մի «ազգ» (միլաթ) չեն, այլ մի համայնք-հասարակութիւն (ջահամաթ) Տաճկաստանում (№ 39)։

Հայոց կոտորածների մասին մենք աւելորդ ենք համարում երկար խօսել, քանի որ մեր տեղ քարերն ու ապառաժներն են խօսում և լեռներն ու ձորերն արձագանգը կրկնում և լուռ ու անլուռ պատմում թուրքերի գազանութիւնները։

Ամենից առաջ մեզ կարևոր է իմանալ Տաճկահայոց վիճակն ընդհանրապէս, ապա թէ ինչ է արուել նրանց համար։

Նախ Տաճկաստանում ընդհանրապէս կոտորածից զերծ են մնացել Կ. Պոլսի հայերը մօտ 125,000 հոգի, թէև նիւթապէս անչափ տուժել։ Ապա ոչ միայն վեց հայկական վիլայէթների, այլև ամբողջ Տաճկաստանում կոտորածից խնայուած մեծ մասամբ կանայք և երեխաներ ու ծերեր տեղահան են եղած Սուրիք (№ 41), Միջագետք գլխաւորապէս Եփրատի ընթացքով մինչև Բաղդադ, մասամբ Մուսուլի կողմերը, մօտ 500,000 հոգի՝ ըստ հասած տեղեկութեանց, ապա և բռնական թուով ուրացութեան շնորհիւ և կամ տեղական տարրերից, գլխաւորապէս գզլբաշ քիւրդերից պաշտպանութիւն գտած հայեր, որոնց ճիշտ թուի մասին հասկանալի պատճառով կարելի չէ առայժմ ոչինչ ասել։

Այս վերջիններիս տակաւին խնամում են հիւրընկալողները, մինչդեռ Սուրիք և Միջագետք աքսորուածների դրութիւնը սարսափելի է, քանի որ ինքը Թուրք կառավարութիւնը կամ չնչին բան էր տալիս և կամ ոչինչ և նոյն իսկ արգելում էր օտարներին հայերին օգնութեան հասնելու. միայն վերջերս Հիւսիսային Ամերիկացիք նաւերով պաշար և հագուստ ուղարկեցին Սուրիքի բնիկների հետ և հայերին։

Անհամեմատ աւելի լաւ է այն հայերի դրութիւնը, որոնք կարողացան ինքնապաշտպանութեան շնորհիւ դիմադրել այնքան, մինչև որ կարողացան ազատուել. մօտ 5,000 հոգի Սուէտացի հայ ֆրանսացոց նաւերով փոխադրուեցան Եգիպտոս և այժմ Անգլիացոց և հայոց օժանդակութեան շնորհիւ Եգիպտոսում տեղաւորուելով սպասում են պատերազմի վախճանին։

Մօտ 275,000 հոգի էլ ազատուեցան Վանայ և Արզրումի վիլայէթներից, մասամբ Հէքքարից և Մշոյ սանջակից։ Սրանք բոլորն էլ ապաստան են գտել Կովկասում, գլխաւորապէս Երևանայ և Գանձակի նահանգներում և Կարսի շրջանում, մի փոքր մասն էլ Անդրկովկասի, Կովկասի և նոյնիսկ Ռուսաստանի քաղաքներում, չհաշուած մօտ 3,000 հոգի գերի ընկած հայ զինուորները, գլխաւորապէս Ռուսաստանում, և մասամբ Հնդկաստանում Անգլիացոց ձեռքը գերի ընկած։ Կովկասի փախստականներին մեծ օգնութիւն ցոյց տուին հայ գիւղացութիւնը, ապա հայ հասարակութիւնները և բոլոր ընկերութիւնները, մինչև որ ռուս պետութիւնն սկսեց ինչպէս Արևմտեան այնպէս էլ Կովկասի ճակատի փախստականներին օգնութեան հասնել դրամական օժանդակութեամբ, նպաստելով միաժամանակ Հայոց Ընկերութիւնների բաց արած որբանոցներին և դպրոցներին, այլև փոխատուութիւն տալով առևտրականներին և օժանդակելով և գրագէտներին. փախստականներին սննդեան դիւրութիւն տալու համար ռուս պետութիւնը 1½ միլիոն ռուբլի ես տուել է վերադարձնելու պայմանով Կ. Հ. Բ. Ը-թեան պահեստներ պահելու Անդրկովկասում և նորանուաճ վայրերում։ Այնպէս որ ռուս պետութեան օժանդակութիւնը Կովկասի փախստականներին հասել է ցարդ 25 միլիոն ռուբլու։ Պետական այս խոշոր օժանդակութիւնը սակայն միայն պիտի չկարողանար հոգալ հայ փախստականների կարիքները, եթէ չլինէին ռուս համայնականութեան (զեմստվոյի) և Քաղաքների Միութիւնները և Մեծ Իշխանուհի Տատեանայի յանձնաժողովը, այլև հայոց զանազան յանձնաժողովները, ինչպէս Մոսկուայինը, Թիֆլիսի Կենտրոնականը և Ս. Էջմիածնի Եղբայրական Օգնութիւնը, այլև Կ. Հ. Բ. Ը-թիւնը, Գիւղատնտեսականը, Նպաստամատոյցը, Հայաստանի Վերաշինութիւնը, ինչպէս և «ազգային» Բիւրոն, որ հոգաց մեր կամաւորների—արդէն փոխուած հրացանաձիգ գումարտակների—զանազան կարիքները։

Գաղթականների դրութիւնը աւելի բարուոքելու համար նոյն իսկ մի համագումար տեղի ունեցաւ Պետրոգրադում (№ 18 և 22), որ չնայելով իր բոլոր օգտակարութեան և բարի ցանկութեանց, չկարողացաւ ցանկալի գործակցութիւն և միութիւն առաջացնել մեր բազմաթիւ ընկերութեանց միջև։ Յուսանք թէ այս միութիւնը—կենտրոնական մարմին ստեղծելու անհրաժեշտութիւնը—կիրականանայ փետրուարին Երևանում կայանալիք համագումարին։

Այս լիառատ պետական ակներև օգնութեան և պաշտպանութեան հանդէպ աչքի էր ընկնում այն վերաբերմունքը, որ ցոյց էր տրւում Տաճկահայաստանի նորանուաճ վայրերում դէպի հայերը և յուսահատութեան ու հիասթափութեան հասցնում մանաւանդ թուրքերի և քրդերի տներում և հարէմներում իբրև ստրուկ մնացած հայերի ազատումը (№ 33 և 34), որի համար հարկաւոր էր միայն մի կտրուկ հրաման, որ սակայն ցարդ տեղի չունեցաւ. իսկ հայ ազգը և իր ընկերութիւնները հայ ազատութեան քաջամարտիկ Անդրանիկ—Սեպուհ—Մուրադ եռապետութիւնը «մի հայ—մի ոսկի» ձեռնարկութիւն օժանդակելով կարողացել են ցարդ միայն 5,000 հոգի ազատել, մինչդեռ այդ գերիների թիւը թերևս շատ աւելի է։

Չնայելով ռուս պետութեան այս խոշոր պետական և մի քանի հաստատութեանց օժանդակութեան, ռուս ժողովուրդը առանձին յատկապէս հայերի համար հանդէս չի եկել, եթէ չհաշուենք Պետրոգրադը, ինչպէս այլ երկրներում։ Այստեղ հանդէս են եկել ժողովուրդները։ Անգլիայում, օրինակ, 1916 թուականին Լոնդոնում կազմակերպուել է (թէև կազմուած էր հոկտեմբերին 1915 թ.) հայանպաստ յանձնաժողով «Հայ փախստականական

Լորդ-քաղաքագլխի հիմնադրամ» (ֆոնդ), որին մասնակցում են բարձրաստիճան հոգևորականներ, լորդեր, պետական անձեր, գիտնականներ, քարոզիչներ, երեսփոխանական ժողովի անդամներ, տիկիններ են, են, ուր առանց այդ է կային զանազան հայանպաստ այլ ընկերութիւններ։ Այս ընկերութիւնը հարիւրհազարներ է ուղարկել փախստականների օգտին Կ. Հ. Բ. Ը-թեան, Եղբայրական Օգնութեան (№ 6)։ Այս ընկերութեան նախագահն է Լոնդոնի Լորդ-քաղաքագլուխը, իսկ գործադիր մարմինը՝ Անիւրին Ուիլըմս. գործակցում են և հայերիս քաջածանօթ Ջէյմս Բրայս, օր. Ռուբինսըն, Բըկստոն եղբայրները և հայերից գնդապետ Մարգար Գրէգրի և Աւետում Յակոբեան։

Այս ընկերութեան կողմից վերապատուելի Հարոլդ Բըկըստոնը անգլիացի բժիշկների և գթութեան քոյրերի հետ եկաւ Թիֆլիս, գնաց Երևան, Ս. Էջմիածին, Վան, Կարին են (№ 14) և անձամբ քննելով երկար և ծանօթացաւ գաղթականութեան վիճակին և երեք ամսից յետոյ վերադառնալով, Daily Chronicle թերթում հայերի վիճակը նկարագրելով կոչ էր անում օգնել հայերին (№ 33), իսկ ընկերութիւնն ինքն էլ աւելի առաջ նոր կոչով դիմել էր ամբողջ Անգլիային, որ նպաստներ ուղարկեն փախստականներին Բըկստոնի ձեռքով բաշխելու, ուր անգամ Մարք Սայքս հայերի «թշնամին» խօսել է ոգևորուած հայերին օգնելու, էլ չեմ խօսում բարեկամների մասին (№ 27)։

Շատ հայանպաստ ընկերութիւններից մինն է «Հայկական կարմիր խաչի հիմնադրամի ընկերութիւնը», որի հիմնադիրն է օ-րիորդ Ռոպինսըն, հայասէր Daily News օրաթերթի Ջոն Ռուբինսընի դուստրը, «Հայ ընկերութեան» քարտուղար Կատսոն Բոնի հետ միասին։ Այս վերջին ընկերութիւնն էլ հիմնել է օր. Ռոբինսընը 1913-թուականից ի վեր, իսկ էլ առաջ հրատարակել է «Հայաստանի իսկական դրութիւնը» The fruth about Armenia և ինքն ամբողջապէս նուիրուած է հայոց դատին (№ 19)։ Վերջերս Հայոց Կարմիր Խաչի Ընկերութիւնը հրատարակել է այս անխոնջ և եռանդուն օր. Ռոբինսընի «Հայաստանն ու Հայերը» գիրքը, որ նկարագրելով Հայոց պատմական, աշխարհագրական, եկեղեցական և քաղաքական կեանքը, չի մոռանում յիշատակելու հայ կամաւորների քաջագործութիւնները, և վերջը կոչ է անում Հայերին օգնելու։ Առհասարակ Անգլիայում մեծ հարցասիրութիւն, հետաքրքրութիւն են ցոյց տալիս դէպի հայերը և զբաղւում են նրանցով ոչ միայն լոկ գթասիրական զգացումից դրդուած, այլ շնորհիւ հայ ժողովրդի տոկունութեան, որով արժանացել են համակրութեան. նոյնիսկ զօրավար Ֆրէնչի բոյրը երեկոյթ է կազմել, ուր անգլուհիք հիացմունք են արտայայտել հայ քաջերին. բանուորներն անգամ դասախօսներ են հրաւիրում հայութեան ծանօթանալու և այս մասում մեծ դեր է կատարում տիկին Բոյաջեանը (№ 23)։

(Շարունակելի) Սկայ

---

## ԱՆԳԼԻԱԿԱՆ ԿԱՊՈՅՏ ԳԻՐՔԸ ՀԱՅ ՋԱՐԴԵՐԻ ՄԱՍԻՆ

Լոնդոնում լոյս է տեսել Անգլիոյ կառավարութեան հրատարակութեամբ 1916 թուականի № 31 Կապոյտ Գիրքը, որ նուիրուած է յատկապէս 1915—1916 թուականների հայոց ջարդերին։ Գրքի վերնագիրն է «The treatment of Armenians in the Ottoman Empire 1915—1916. Document presented fo Yiscount Grey, Secretary ot State for Foreign Affairs by Yiscount Bryce London 1916։

«Վերաբերմունքը դէպի հայերը Օսմանեան կայսրութեան 1915—1916 թուերին։ Վաւերաթղթեր, որ ներկայացուած է արտաքին գործերի նախարար Վիկոնտ Գրէյին Վիկոնտ Բրայսի կողմից։ Լոնդոն 1916»։

Գիրքը բաղկացած է 684 մեծադիր էջերից և պարունակում է 150 վաւերագրեր։

Գրքում սկզբում կայ Փոքր Ասիայի և Տաճկահայաստանի քարտէզը, որ նշանակուած են վաւերագրերի վայրերը։

Առաջի տեղը գրքում գրաւում է Վիկոնտ Բրայսի նամակը՝ ուղղած արտաքին գործերի մինիստր Վիկտոնտ Գրէյին, և վերջինիս պատասխանը։

Ապա գալիս է Բրայսի յառաջաբանը, երեք հեղինակաւոր անձանց նամակները, որոնց ներկայացրել էր Բրայսը հրատարակուելիք վաւերագրերը՝ խնդրելով նրանց կարծիքը։ Այդ անձինք են պ. Ֆիշեր, Շեֆֆիլդի համալսարանի կանցլերը, պ. Մուրրէյ, Օկսֆորտի համալսարանի ուսուցչապետը, և պ. Ստորի, Ամերիկայի փաստաբանների ընկերութեան նախագահը, որոնք շեշտում են այդ վաւերագրերի մեծ նշանակութիւնը։

Յետոյ հրատարակիչը մի յօդուածով մանրամասն բացատրում է, թէ ինչ տեսակի աղբիւրներից է նա օգտուել և ինչ կարևորութիւն ունի։ Վաւերաթղթերը չորս տեսակի են բաժանւում.

ա.) մի գերմանական վկայութիւն, հրատարակուած գերմանական մի ամսագրում, յետոյ գրաքննիչից արգելուած։

բ.) Վաւերագրերը գրուած են գերմանացի կամ չէզոք ականատեսների ձեռքով, որոնք բնակւում էին Թիւրքիայում, պաշտօնավարելով գերմանական միսիոնարական կամ բարեգործական հիմնարկութիւնների կամ գերմանական Կարմիր խաչի մէջ։ Այս աղբիւրներն էլ ի հարկէ չեն կարող կասկածի ենթարկուել իբրև Թիւրքիային թշնամի կամ հայերին նպաստաւոր։

գ.) Վաւերաթղթեր ուրիշ չէզոք ականատեսների, գլխաւորապէս Ամերիկացիների կամ Շվէյցարացիների ձեռքով, որոնք ոչ մի կապ չունէին պատերազմող ոչ մի կողմի հետ։ Այդ կարգի վաւերագրերը գրաւում են գրքի ամենամեծ մասը։

դ.) Վաւերագրեր հայ կամ աօրի տեղացիների, որոնք կազմում են փոքր մասը միայն և հրատարակիչը համեմատելով այդ միւս երեք կարգի վաւերագրերի հետ, համարում է միանգամայն վստահելի։

Վկայաթղթերը դասաւորուած են այսպէս. I գլուխ. Ընդհանուր նկարագրութիւններ. 14 վաւերագրեր, 1915 թուականի ջարդերի շրջանի ընդհանուր պատկերը. իսկ ապա յիշւում են վայրերը—Վան, Բիթլիս, Սղըրէյջան և Հէքքիարէ, գաղթականները Կովկասում, Էրզրում, Մամուրէթ-ուլ-Ազիզ, Տրապիզոնի վիլայէթ և Շաբին-Կարահիսարի սանջակ, Սվազ, Կեսարիայի սանջակ, Անկիւրիա քաղաք, Թրակիա, Կ. Պոլիս, Բրուսա, Իզմիթ, Անատոլիոյ երկաթուղի, Կիլիկիա (Ադանայի վիլայէթ և Մաշրաշի սանջակ), Ջեբել-Մուսա, Ուրֆա, Հալէպ, Դամասկոսի և Դեր-էլ-Զորի սանջակ բազմաթիւ վաւերագրերով, որոնցից մի քանիսն ստացուած են տպագրութեան ընթացքում։ Գրքի վերջին մասը բռնում է «ամփոփումը հայոց պատմութեան մինչև 1915 թիւը և 1915 թուի ընթացքում»։

Այս ամփոփումը պարունակում է հետևեալ գլուխները. Եւրոպական պատերազմը և Հայաստանը, Հայոց պատմութեան տեսութիւն, Հայ ազգի աշխարհագրական տարածութիւնը, Հայ ժողովուրդը և Օսմանեան կառավարութիւնը, 1915 թուականի տեղահանութիւնները, սկզբնապատճառները, 1915-ի տեղահանութիւնները և ընթացքը։

Ապա գալիս են 6 յաւելուած, տեղահանութեանց մանրամասնութիւնների վերաբերեալ։

Թողնելով մօտ ապագային տալ գրքի մէջ բերուած կարևորագոյն վաւերաթղթերի թարգմանութիւնը, այստեղ առաջ կը բերենք միայն Վիկոնտ Բրայսի նամակը Լորդ Գրէյին և վերջինիս պատասխանը.

### Լորդ Բրայսի նամակը

Սիրելի սէր Էդուարդ. 1 յուլիսի, 1916։ 1915 թուականի աշնանը թէ Արևմտեան Եւրոպայում և թէ Միացեալ Նահանգնե-

րում սկսեցին լուրեր հասնել Ասիական Թիւրքիայի քրիստոնեայ բնակչութեան ջարդերի և տեղահանութիւնների մասին։ Սկզբում սակաւաթիւ և թերի—որովհետև Թիւրք կառավարութիւնը ամեն ջանք գործ էր դրել այդ դրաման երկրից դուրս տարածուելուն արգելք դնելու—այդ լուրերը հետզհետէ բազմացան թէ թուով և թէ մանրամասներով, մինչև որ 1916-ի սկզբում հնարաւոր եղաւ բաւական ճշգրիտ տեղեկութիւն ստանալ անցած-դարձածի մասին։ Յետոյ ես մտածեցի, որ թէ յանուն պատմական ճշմարտութեան և թէ այն հարցերի համար, որ պէտք է ծագեն երբ պատերազմը վերջանայ, անհրաժեշտ է լրացնել այդ տեղեկութիւնները և ստուգել նոր վկայութիւններով, այնպէս որ կարելի լինի կազմել մի ընդհանուր պատկեր և գնահատել նշանակութիւնը։ Քանի որ մի քանի տեղերի վերաբերմամբ նիւթերը պակասում էին կամ շատ քիչ էին, ես գրեցի այն բոլոր անձանց, որոնք իմ կարծիքով կարող էին ունենալ կամ ձեռք բերել վստահելի տեղեկութիւններ, խնդրելով տալ ինձ այդպիսի տեղեկութիւններ։ Ես դիմեցի մասնաւորապէս իմ բարեկամներին Ամերիկայի Միացեալ Նահանգներում,—մի երկիր, որը երկար և բարեկամական յարաբերութիւններ է ունեցել Արևելեան Քրիստոնեաների հետ, և որտեղ այդ քրիստոնեաներից շատերը գաղթել են վերջին տարիներում։

Նման դիմումներ արուած են և Շվէյցարիայում,—նոյնպէս մի չէզոք երկրում, որի ժողովուրդը միշտ կենդանի հետաքրքրութիւն է ցոյց տուել հայերի վիճակով։ Երբ այդ տեղերից ստացուած պատասխանները ցոյց տուեցին, որ կարելի է ունենալ բաւականաչափ նիւթեր պատմութեան համար—ի հարկէ նախնական, բայց ճշգրիտ որքան որ այժմեան դրութիւնը թոյլ է տալիս,—այն ժամանակ ես բաղդ ունեցայ ինձ իբրև աշխատակից գտնել մի երիտասարդ պատմաբան բարձր ճեմարանական աստիճանով, այն է պ. Արնոլդ Տոյնբի, Օկսֆորդի Կոլէջից։ Նա սկսեց ուսումնասիրել և դասաւորել հաւաքուած վկայութիւնները, կարգի բերելով և աւելացնելով այնպիսի ծանօթութիւններ՝ պատմական և աշխարհագրական, որոնք անհրաժեշտ էին բացատրութեան համար։ Այդ նիւթերը պ. Տոյնբու ձեռքով կարգաւորուած և նրա ծանօթութիւնների հետ միասին ահա ներկայացնում եմ ձեզ։ Ի հարկէ այս բոլորը հաւասար արժէք ունեն, որովհետև մինչդեռ մեծագոյն մասը ականատեսների պատմութիւններ են, մի փոքրիկ մասը պատմում են արդէն այն, ինչ որ լսել են ականատեսներից։ Գրքին կցուած համառօտ յառաջաբանում ես փորձել եմ գնահատել այս բոլորի արժէքը, և կարող եմ միայն ասել, որ այստեղ չի մտել ոչ մի այնպիսի բան, որի էական ճշգրտութիւնը ենթակայ լինի որևէ հիմնաւոր կասկածի։ Ի նկատի են առնուած միայն իրողութիւնները և ամենայն խնամքով ջանացել ենք խույս տալ ապագայ քաղաքականութեան հարցերից։

Ի հարկէ շատ ցանկալի է որ ոչ միայն ստուգուած իրողութիւնն արձանագրուած լինին ապագայ պատմագիրների համար, քանի որ դէպքերը դեռ թարմ են կենդանի յիշողութեան մէջ, այլ և պէտք է որ պատերազմող ազգերի հասարակական կարծիքը—և կարող եմ աւելացնել նաև չէզոք ազգերի—հնար ունենայ իրազեկ լինելու այն բոլորին, ինչ որ կատարուել է Փոքր Ասիայում և Հայաստանում, որպէսզի սա գործ դնի իր ազդեցութիւնը այն ցանկալի գործելակերպի վրայ, որին պէտք է հետևել, երբ ներկայ պատերազմը վերջանալուց յետոյ ձեռնարկուի մօտաւոր Արևելքի քաղաքական վերակազմութեան գործը։

## Լորդ Էդուարդ Գրէյի պատասխանը

*Իմ սիրելի Բրայս.* *Օգոստ. 23, 1916*

Շնորհակալութիւն եմ յայտնում ձեզ, որ ուղարկել էք ինձ Հայկական ջարդերի վերաբերեալ վաւերագրերի ժողովածուն, որը այնպէս յաջող կերպով կազմել է պ. Արնոլդ Տոյնբին։

Վկայութիւնների մի սարսափելի հաւաքածու է այդ, բայց ես զգում եմ, որ դա պէտք է հրատարակուի և ընդարձակօրէն ուսումնասիրուի այն բոլոր անձանց՝ կողմից, որոնք իրենց սըրտում ունեն մարդասիրական լայն զգացումներ։ Այդ կարևոր կը լինի ոչ միայն այն տեսակէտից, որ հասարակական կարծիքը անմիջապէս իրազեկ կը դարձնի Թիւրք կառավարութեան բըռնած դիրքին դէպի այդ անպաշտպան ժողովուրդը, այլ և իբրև մի շտեմարան տեղեկութիւնների ապագայ պատմաբաններին և ուրիշ նպատակների համար, որոնց մասին յիշուած է ձեր նամակում։

Գրէյ

Գրքին կցուած է մի առանձին թերթ հրատարակչի կողմից, որի մէջ նա բացատրելով որ սովորական ընթերցողի համար գըրքի մէջ տպուած վաւերագրերը անչափ բազմաթիւ են և երբեմն պարունակում են կրկնութիւններ նոյն նիւթի մասին զանազան աղբիւրներից, մատնացոյց է անում այդ վաւերագրերից 44 ամենակարևորների վրայ, որով և առաջարկում է լայն հասարակութեան ուշադրութեանը։ Որքան մեզ յայտնի է, Ազգային Բիւրոն առանձին կարևորութիւն տալով ռուս հասարակութեանն իրազեկ դարձնելուն Հայաստանում տեղի ունեցած ջարդերին, որոշել է անմիջապէս հրատարակել ռուսերէն Անգլիական Կապոյտ Գրքի մէջ զետեղուած վաւերագրերից կարևորագոյնները, իսկ առաջիկայում մեր ծրագրած «Կարմիր գրքի» մէջ տպագրել Կապոյտ Գիրքը ամբողջապէս։

Յակ. Քոչարեան

# Գրականութիւն

## ՊԱՏԿԵՐՆԵՐ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԻՑ

### Ա.

Շքեղ զարդարուած դահլիճ. փափուկ բազկաթոռի մէջ, թաւշեայ հագուստներով, խոշոր ադամանդները ականջներին և թանկարժէք մատանիները մատներին նստած էր Սոֆիա Պետրովնա Աւալեանը և յղկում-փայլեցնում էր իր եղունգները։ Այսօր յունուարի մէկն էր, Նոր տարի և իր ամուսնու՝ Վասիլի Իվանիչի անուանակոչութեան օրը և ըստ սովորութեան նրանց մօտ ճաշի էին հաւաքուելու նրա ընկերները։

Մերթ վեր էր կենում Սոֆիա Պետրովնան, մտնում էր սեղանատունը և խոհանոցը դիտելու՝ արդեօք ամեն բան կարգին է և նորից վերադառնում էր դահլիճ շարունակելու իր պարապմունքը։ Վարիան դարձեալ ուշացաւ, մտածում էր նա։ Ահա գալու են հիւրերը, ամբողջ հոգսը ես պիտի քաշեմ, իսկ նա իւր համար ազատ ման է գալիս։ Սոֆիա Պետրովնայի դէմքը թըթուեց...

Հնչեց առաջին զանգը, յետոյ երկրորդը, երրորդը և նախասենեակը լցուեց աղմուկով։

Սոֆիա Պետրովնան արագութեամբ պահեց եղունգներ մաքրելու գործիքները և ժպիտը երեսին ընդառաջ գնաց հիւրերին։

—Շնորհաւոր լինի Նոր տարին, շնորհաւոր լինի մեր թանկագին Վասիլի Իվանիչի անուանակոչութիւնը։ Երկար տարիներ ուրախ անցկացնէք, միասին ծերանաք։

—Շնորհակալ եմ, շնորհակալ եմ, հազիւ հասցնում էր Սոֆիա Պետրովնան պատասխանելու ամենքին։ Համեցէք, նստեցէք, խընդրեմ։

Շուտով հաւաքուեցին բոլորեքեան, եկաւ նաև Վասիլի Իվանիչը և հիւրասէր տանտիկինը հրաւիրեց ամենքին սեղանատուն։ Ինչ ասես չկար սեղանի վրայ։ Էլ տեսակ-տեսակ նախաճաշիկներ (զակուսկաներ), էլ թանկագին գինիներ, էլ թարմ և չոր մրգեր, էլ քաղցրաւէնիք... Թանգութիւնը կարծես

չէր ազդել այս սեղանի վրայ և սովորականից աւելի ճոխ էր սարքած նա։

Սոֆիա Պետրովնան մեծ ռոճիկ էր տալիս խոհարարին և սիրում էր պարծենալ ծանօթների առաջ սրա եփած համեղ կերակուրներով։

Մի ժամ արդէն նստած էին հիւրերը սեղանի շուրջը, բայց կերակուրներին վերջ չկար։

—Մեր հիւրասէր և գեղեցիկ տանտիկնոջ կենացը… մեր թանկագին Վասիլի Իվանիչի կենացը… լցուեցին բաժակները, կենացները յաջորդեցին իրար և առատ կերակուրները ողողւում էին անուշահոտ գինիներով։ Ճաշը վերջացաւ։ Հիւրերը անցան նորից դահլիճ, ուր պատրաստ էր արդէն սուրճը։

—Թոյլ կըտա՞ք արդեօք, յարգելի Սոֆիա Պետրովնա, առաջարկել ձեզ մի օթեակ վաղուայ ներկայացմանը, որը կայանալու է մեր բարեգործական ընկերութեան օգտին, մօտեցաւ Սոֆիա Պետրովնայի հիւրերից մէկը, պ. Յովսէփեանը։

—Խնդրեմ, խնդրեմ, մեծ ուրախութեամբ։ Մի՞թէ դուք չը գիտէք, որ իմ քսակը միշտ բաց է խեղճերի համար։ Ա՜խ, այդ թշուառները… և Սոֆիա Պետրովնան դէպի վեր բարձրացրեց աչքերը պատշաճաւոր դէմքով։

—Ի հարկէ գիտեմ, Սոֆիա Պետրովնա, որքան բարի է ձեր սիրտը, և հենց այդ է ինձ վստահութիւն ներշնչել առաջարկելու ձեզ մի օթեակ։

Սոֆիա Պետրովնան հանեց քսակից 25 ռուբլիանոց և մեկնեց Յովսէփեանին, որը բարձրացնելով նրա աջ ձեռքը և մօտեցնելով շրթունքներին շշնջաց.

—Ո՛րքա՜ն բարի էք…

Սոֆիա Պետրովնան ինքնահաւան տեսքով նայեց բոլորին և գնաց հրամայելու, որ թղթախաղի սեղաններ պատրաստեն։

—

Նոյն տան ներքևի յարկում մութ և խոնաւ նկուղի մէջ ցնցոտիներով փաթաթուած նստած էր Մարթան թախտի վրայ իր հիւանդ աղջկայ առաջ։ Նա հարուստների տները օրավարձով աշխատելու էր գնում և կոպէկներ հետ գցելով հաւաքել էր մի քանի ռուբլի, որով ուզում էր Նոր տարուն մի զգեստ կարել իր միակ աղջկայ՝ Նազիկի համար և գոնէ դրանով ուրախացնել նրան աղիզ օրերին։

Սակայն մի շաբաթից ի վեր հիւանդացել էր Նազիկը։ Մայրը չկարողացաւ գնալ աշխատանքի և ինչոր ունէր քիչ քիչ ծախսեց ու այսօր նստած էր առանց մի կոպէկի։ Փող չունէր որ բժիշկ կանչի, նոյն իսկ հաց չունէր որ կերակրի հիւանդին։

—Մայրի՜կ, քաղցած եմ… թոյլ ձայնով կանչեց Նազիկը։

—Ա՜խ, ի՞նչ անեմ, ու՞ր գնամ, ու՞մ դիմեմ, մտածում էր թըշուառ կինը, և արցունքները փայլում էին նրա խոր ընկած աչքերի մէջ։ Ինքն էլ քաղցած էր, բայց իր մասին բոլորովին չէր մտածում, միայն թէ Նազիկին կարողանար կշտացնել։

—Շնորհաւո՜ր լինի Նոր տարին, Մարթա քոյրիկ. բացականչեց գոնապանը, ներս մտնելով նկուղը։ Նազիկի համար խնձոր եմ բերել, ու՞ր է նա։ Տեսնելով Մարթայի այլայլուած դէմքը, նա շուարած մնաց տեղն ու տեղը։

—Հը, ի՞նչ է պատահել, շուտ ասա, սիրտս մի վախեցրու։

—Ախպէր ջան, Նազիկս հիւանդ է, վերջին կոպէկներս ծախսեցի, այժմ փող չունիմ, որ բան առնեմ, ուտացնեմ և ամեն բանն էլ թանգ ու կրակ է։

—Թա՜նգ է, ասում ես, էհ քոյրիկ, մեզ համար է թանգ, մեզ համար, դառն քրտինքով աշխատողներիս համար։ Ապա վերևի խանումին էլ հարցրու։ Այսօր 5 մշակով լիքը կողովներ ուտելեղէն բերին։ Տես, թէ քանի հարիւր մանէթ են ծախսել, և մի ժամուայ մէջ պիտի այդքանը լափեն։ Երևի նրանց բողազը մերի պէս չի…

—Մայրի՜կ, քաղցած եմ…

Մարթան էլ չկարողացաւ համբերել. մինչդեռ գոնապանը խօսում էր, նրա գլխում մի միտք էր ծագում։

—Ախպէր ջան, մի քիչ նստիր Նազիկի կողքին, ես հրէս կը վերադառնամ։ Արագութեամբ նա շալը գցեց գլխին, ամանը վերցրեց և սանդուխտներով վեր բարձրացաւ։

Սովորական բան չէր նրա համար մուրացկանութիւն անել, բայց որ Նազիկը՝ իր սիրելի զաւակը քաղցած էր… Ահա հարուստների խոհանոցի դուռը։ Ձեռքը մեկնեց, որ բաց անի ու մէկ էլ ետ քաշուեց։—«Ամօթ է, ո՞նց գնամ ուզեմ», տատանւում էր խեղճ կինը։

Դռան ճեղքերից կերակուրների անուշ հոտ էր բուրում և գրգռում էր Մարթայի ախորժակը։ Վաղուց տաք կերակուրի համ չէր տեսել և նրա գլուխը պտոյտ եկաւ, աչքերը մթնեցին։ Նա յենուեց պատին. այդ րոպէին խոհանոցից դուրս եկաւ ծառան, նկատեց Մարթային, կարեկցութեամբ հարցափորձ արաւ և ներս հրաւիրեց։ Մարթան սիրտ առաւ և մտաւ։

Տէր Աստուա՜ծ, այդ ինչքա՜ն աման էր կիտուած սեղանի վըրայ և շուրջը. ինչքա՜ն կերակուրների մնացորդներ… Մի՞թէ հընարաւոր է, որ մի օրուայ մէջ մի քանի մարդ այդքան ուտեն… Մարթայի հասկացողութիւնից վեր էր այդ։

Խոհարարը լսելով Մարթայի անելանելի դրութեան մասին՝ լցրեց նրա ամանը տաք կերակուրով և խոստացաւ ամեն օր բաժին հանել մինչև աղջիկը առողջանայ և նա դարձեալ աշխատանքի գնայ։

—Աստուած քեզ բարի տայ, բարի մարդ, զգացուած արտասանեց Մարթան և թեթևացած սրտով դուրս էր գալիս խոհանոցից։

Յանկարծ դուռը բացուեց և Սոֆիա Պետրովնան կանգնեց ուղղակի Մարթայի առաջ։

—Այս ի՞նչ է, ո՞վ է այս կինը ի՞նչու համար է եկել խոհանոց, գոռաց նա։ Բոլոր ծառաները կուչ եկան, զգալով՝ որ փոթորիկ է լինելու այս րոպէիս։

—Ի՞նչ էք պապանձուել, չէ՞ք լսում որ հարցնում եմ. ո՞վ է այս կինը և ինչի՞ համար է եկել։

—Սա մեր բակում ապրող խեղճ կին է, իր հիւանդ աղջկայ համար քիչ կերակուր տուի, առաջ գալով պատասխանեց խոհարարը։

—Ի՞նչ, պժու՞ել ես ինչ է. այս թանգ տարին կարո՞ղ եմ ես բակի բոլոր աղքատներին կերակրել։ Ինչպէ՞ս ես համարձակուել ներս թողնել խոհանոց այս կեղտոտ կնոջը։ Չէ՞ որ քանիցս հրամայել եմ վռնդել մուրացկաններին։ Նրանց որ մի անգամ երես տաս, ամեն օր էլ կըգան։ Մեր կերակուրներից որ չուտեն, չե՞ն կարող ապրել, հա՞…

—Գնա կորիր այստեղից, էլ աչքիս չերևաս, դարձաւ նա Մարթային, որը շփոթուած կանգնած էր Սոֆիա Պետրովնայի առաջ։

Մարթայի ձեռքերը դողացին. նա վայր գցեց ամանը և թափեց ամբողջ կերակուրը։ Մի քանի կաթիլ ընկաւ Սոֆիա Պետրովնայի զգեստի վրայ։

—Ա՜յ… ա՜յ… զգեստս, զգեստս… փչացաւ, կորաւ, գոռում էր Սոֆիա Պետրովնան ետ ետ քաշուելով։ Ո՞վ է ներս թողել այս անպիտան կնոջը, ի՞նչ աներես ծառաներ էք. ես դուրս կանեմ ամենքիդ, վաղնեեթ դուրս կանեմ։ Կատաղած ներս գնաց Սոֆիա Պետրովնան, իսկ խեղճ Մարթան դատարկ ձեռքով մէջքը կռացած իջնում էր սանդուխտներից և կուլ էր տալիս դառն արտասուքը։

—Հարամ լինի ձեր հացը, փնթփնթում էր խոհարարը ուժգին փակելով դուռը և հաւաքելով կեղտոտ ամանները։

Խնիմենթօ

# ԳՐԻԳՈՐ ԶՈՀՐԱՊ*)

## ՍԿԵՊՏԻԿԸ

*Ով տեսել է Ռուբէնսի նկարները, անշուշտ նկատած կը լինի որ ֆլամանդացի մեծ վարպետը իւր բոլոր ստեղծագործութեանց մէջ ունի կանացի մի որոշ տիպար, որը նրա կնոջ պատկերն է, և որը նա սիրում է ներկայացնել մերթ իբր Աստուածամայր, մերթ իբր Վեներա կամ պարզապէս իբր որևէ կանացի դէմք իւր բազմամբոխ նկարների այս կամ այն անկիւնում տեղաւորած։*

*Նոյնը կարելի է ասել նաև Տոլստոյի մասին. Աննա Կարենինայի Լեւինը նկատելի է հեղինակի այլևայլ երկերի մէջ. դա ոչ միայն պատահական չէ, այլ հեղինակի տիպար անձնաւորութիւնն է, նրա խորհրդածութեանց մշտական առարկան, հենց ինքը հեղինակը իւր ցանկութիւնների արտայայտութեամբ։*

*Զոհրապի պատմուածքների մէջ ևս մի մարդ կայ, որը կրկնւում է բազմիցս, գրաւում ընթերցողի ուշադրութիւնը, դառնում է մի տեսակ շեշտուած մարդ, հեղինակի ներկայացուցիչը, կարելի է ասել **)։*

*Այդ անձնաւորութիւնը մի սկեպտիկ է, երբեմն ծերունու կերպարանքով, երբեմն երիտասարդի, որին շատ լաւ յայտնի է մարդկային սրտի անհաստատութիւնը։ Այսօր պաշտած էակին վաղը կարող է թողնել, և ազատուելիս շատ էլ ուրախ կը լինի։ Բայց հերիք է, որ այդ լքուած կինը մի ուրիշի հետ տայրի, և ահա ինքը նորից մի նոր տարփանքով հետամուտ կը լինի միևնոյն կնոջը։ Առ հասարակ կանայք նրան խելագարեցնելու չափ կարող են հրապուրել, եթէ միայն դժուարահաճ լինեն, հազար ու մի պչրանքով կապեն նրան իրենց, առանց հեշտութեամբ անձնատուր լինելու, որպէսզի կարծել տան, թէ իրենք արտասովոր էակներ են, հետևաբար արտասովոր կերպով էլ կարող են իբր թէ երջանկացնել։ Եւ ընդհակառակն, վա՜յ այն միամիտ կանանց, որոնք, առանց ձևականութիւնների, մէկից և ամբողջովին բաց կանեն իրենց սիրտը այդ կարգի տղամարդկանց համար։ Երկու երեք օրից յետոյ վերջիններս կսկսեն տխուր յօրանջել. պատճառը, որովհետև, կասեն ձեզ անկեղծ խոստովանութեամբ, «մեզի խաբեբայ զգուանքներ, կեղծ հրապոյրներ պէտք են, խենթեցնելու համար մեզ սիրով...»*

*Անհաստատ ցանկութիւնների տէր այդ մարդը, որին կարելի է նոր ժամանակի մարդ անուանել, աւելի ինքն է տանջւում, քան ուրիշներին տանջում։ Նրա հոգին դատարկ է, մարմինը յոգնած, բայց և այնպէս հայեացքը միշտ յառած է շրջապատողներին։ Երբ նրան դաւաճանում են, ոյժ իսկ չէ ունենում իւր զայրոյթն արտայայտելու, ոչ միայն որովհետև ինքն էլ շատ անմեղը չէ, այլ և այն պատճառով, որ միտքը նրբին դատողութիւններով համոզում է նրան ներողամիտ լինել մարդկային տկարութիւնների նկատմամբ. գործուած յանցանքների մէջ էակների կամքից անկախ պատճառներ կան։ Վերցրէք, օրինակի համար, այս ինչ գեղեցիկ կնոջ, որը անտարբեր չէ դէպի մարդկանց հաճոյախօսութիւնները և հենց իրօք էլ դաւաճանում է իւր ամուսնուն. ո՞վ է մեղաւորը. ինքը այդ կի՞նը, թէ նրա մարդկայնութիւնը։ Այն թրթռուն սիրտը, հաճոյքի այն զգայնութիւնը, որ բնութիւնը շնորհել է նրան. այն գեղեցիկ արտաքինը, որ ուրիշների ուշադրութիւնը գրաւում է, մղում են նրան դէպի այլոց փայփայանքներն աւելի, քան հենց ինքը այդ կինը կը ցանկար ուզէ։*

*Բացի այս՝ նման դէպքերում անարատ պատուի նախանձախնդրութիւնից մղուած չէ, որ զայրանում է ամուսինը, ո՛չ պարզապէս վիրաւորուել է, որ ուրիշները ձեռք են տուել իւր սեփականութեանը։ Այդպէս է աշխարհը. սեփականութեան խնդիրը անշուշտ իրերից անցնում է մինչև իսկ էակներին, և տղամարդն իրեն տէր է համարում ոչ միայն իւր պարտէզին, այլ և իւր կնոջը։*

*Կը նշանակէ նման դէպքերում մեր զայրոյթը կեղծ է, քանի որ բոլորովին այլ պատճառից է բղխում։ Առ հասարակ պէտք է ասել, որ ամեն տեղ այս աշխարհում իշխում է կեղծաւորութիւնը։ Նոյնիսկ մեր խղճմտանքը, որ թւում է, թէ պէտք է անկաշառ դատաւոր լինէր, հանդիստ ննջում է մեր մէջ, երբ մենք, ասենք թէ, որևէ յանցանք ենք գործում։ Այդ դեռ հերիք չէ. նոյնիսկ մեզ արդարացնող պատրուակներ է որոնում և գտնում է։ Մինչդեռ եթէ մենք ինքներս լինէինք մի նման յանցանքի զոհ, այդ միևնոյն խղճմտանքը կը գտնէր բազմաթիւ հիմքեր՝ դատապարտելու համար մեզ դէմ մեղանչողներին։ Եթէ այդ բոլորն այդպէս է, չարժէ ուրեմն աղմուկ բարձրացնել, մանաւանդ որ աշխարհում գոյութիւն ունի մահը, այդ հայլոցը, ուր բոլոր մեղքերը քաււում են։*

*Կարևոր է այստեղ նկատել մի հանգամանք. Զոհրապի հերոսի սկեպտիկութիւնը բղխում է կանանց տածուած սիրոյ հիասթափումից, որը և պատճառ է դառնում աւելի ուշադրութեամբ դիտել տալու շուրջը, և ամեն տեղ նոյն կեղծիքն է երևան գալիս։ Վերցրէք բարեկամութիւնը. նոյնչափ պատիր է, որչափ և սէրը. այս պատճառով էլ անկարելի է յենուել նաև բարեկամութեան վրայ*). հապա փորձիր աղքատանալ, փողոցում քեզ տեսնելիս բոլորն էլ կը փոխեն իրենց ճանապարհը, որ չը լինի առիթ տան քեզ մօտենալու իրենց և մի բան խնդրելու։ Եթէ նոյնիսկ կենդանութեանդ ժամանակ սիրեն քեզ, հերիք չէ. մահիցդ յետոյ բոլորն էլ, որ դեռ մի քանի օր առաջ ակնարկիդ արժանանալու համար քծնում էին շուրջդ, կսկսեն իրենց «բարոյականի տոպրակնին բացած» չարախօսել։ «Մարդիկ դերասաններու պէս, որոնց թատերախաղը վերջացած է, իրենց լեզուն ու դէրքը կը փոխեն, գոհունակութեան շունչ մը առնելով, երկարատև ծըպտում մը, լեզուի ու վարքի ծպտումը թօթափող մարդու ազատ շնչառութիւնը...»*

*Նոյն կեղծիքը նաև կրօնական խնդիրներում. շատ մարդիկ եթէ առաւօտ երեկոյ ժամ են գնում, դեռ չէ նշանակում, որ իրօք ջերմեռանդ են. նրանք պարզապէս որևէ նիւթական ակնկալութիւն ունին Աստուծուց։ Ուստի երբ Աստուած չէ կատարում նրանց խնդիրքը և նրանք դժբախտանում են, իսկոյն նրանց աղօթքը փոխւում է հայհոյանքի, ծաղրի։*

*Տարօրինակ ընթացք է բռնել նաև եկեղեցին, որի պաշտօնեաները ինչ-որ կանոնների վրայ հիմնուած՝ զլանում են հաղորդութիւն տալ այն անառակ աղջկան, որը մահուան անկողնում անկեղծ զղջման գալով ուզում էր ճաշակել և այնպէս փակել աչքերը։ Այն ինչ որևէ հարուստ, եթէ նոյնիսկ վաշխառու եղած լինի նա, առօք փառօք կը թաղեն ժամի բակում. դեռ եկեղեցու ճակատին էլ մարմարէ տախտակի վրայ կը կարդաք հանգուցեալի բարեգործութեանց ոսկետառ գովեստը. (Ժամին Բակը)։*

*Գիտենք նոյնպէս, թէ տարբեր դաւանութիւնների պատկանող քրիստոնեաներն ինչպէս են ատում իրար, չը նայած որ նրանց դաւանած կրօնը սէր է քարոզում նոյնիսկ հեթանոսների նկատմամբ. (Արմենիսսա)։*

*Մխիթարական չէ նաև գիտութիւնը. նայեցէք բժիշկներին. նրանց գիտելիքն այն աստիճան ողորմելի է, որ նոյնիսկ իրենց սիրած էակի կեանքը չեն կարողանում ազատել մահից։ Միևնոյնը կարելի է ասել նաև փաստաբանների մասին, որոնք չեն կարող ասել, որ միշտ էլ ղեկավարւում են սոսկ արդարութեան զգացմունքով. (Տալիլա, Ճէյրան, Անդրշիրմի սէր)։*

*Տեսնում ենք, որ մէկը միւսի յետևից սնանկանում են բո-*

*) Տես «Համբաւաբեր» № 1։

**) Տես Թէքճարիկ, Տալիլա, Անդրշիրմի սէր, Միսաք, Երջանիկ մահը, Դիմակը, Վերադարձը նոյն պատմուածքների կենտրոնական անձերը։

*) Տես Կարծեմ թէ, Անդրշիրմի սէր։

լոր արժէքները և մարդկային կեանքը դառնում է կեղծիքների մի շարք, որը դիտել կարողացող մարդուն միայն տխրեցնել կարող է։ Մինչև անգամ այնչափ առաջ է գնում Զոհրապ այդ ուղղութեամբ, որ դառնում է արդէն յոռետես, որովհետև կարծում է, թէ անհնարին է երջանկութիւնը, քանի որ բնութիւնը և մեր ցանկութիւնները ճակատագրական կերպով հակասում են միմեանց։ Ահա ձեզ մի գեղեցիկ կին, որի ժպտին արժանանալու համար մի երիտասարդ պարոն շարունակ դեգերում է նրա շուրջը, բայց իզուր. տիկինը միշտ մռայլ է և լուրջ։ Երիտասարդը հեռանում է։ Անցնում են տարիներ։ Մի օր նրանք նորից պատահում են միմեանց. կինը դարձեալ նոյն գեղեցիկ էակն է, միայն թէ արդէն թառամած։ Թառամած է նոյնպէս պարոնը, որ երբ տեսնում է տիկնոջ աղջկան, որը այժմ օրիորդ էր արդէն, յիշում է նրա մօր երիտասարդութիւնը, այնքան որ նման է նա իւր նախատիպարին։ Խօսակցութեան միջոցին պարոնն ինչ-որ հաճելի խօսք է ասում տիկնոջը։ Վերջինս որ առաջ երբէք ժպտալ չը գիտէր, սկսում է յանկարծ ծիծաղել սաստիկ, մի անվերջանալի ծիծաղ, որ ուրախութեան փոխարէն տխրութիւն է տարածում շուրջը, որովհետև տիկինը այժմ ինչ-որ հիւանդութեան բերմունքով չնչին պատճառից սկսում էր ժամերով ծիծաղել, բարձր, անզուսպ ու ցաւագին կերպով։ Այն ինչ պարոնը, անտեղեակ նրա հիւանդութեանը, մի վայրկեան երջանիկ էր զգացել իրեն, որ կարողացել էր վերջապէս ծիծաղեցնել իւր սառն դիցուհուն, տեսնելով, որ դա ծիծաղ չէ, այլ մի անպատմելի ցաւ, սկսում է գրեթէ սարսափել.

«Խորհեցայ որ տասը տարի առաջ իմ փնտրածս այս աղուոր երեսին վրայ՝ սա պոռացող, անզիտակից ու անիմաստ խնդուքը չէր, այլ այն պզտիկ, գրեթէ աննշմարելի ժպիտը, այն խորհրդաւոր ու չնչին բանը, որ ամեն խոստումները ու ամեն վերապահումները, ամեն մերժումները ու ամեն անձնատուութիւնները, ամեն տարակոյսները ու ամեն յայտնութիւնները իր մէջը կը պահէ։

«Խորհեցայ մանաւանդ տարօրինակ ճակատագրին այս կընկանը, որ իր մէկ ժպիտը այնքա՜ն ժլատ, ագահ յամառութեամբ ամենուն զլանալէ ետքը, ահա զուր ու փուճ տեղը իր անսպառ խնդուքը կը թափէր իր շուրջը, առանց որ մէկը գտնուէր ու ծրռէր զանոնք գետնէն ժողվելու համար»․ (Խնդուքը)։

М. Մատէնճեան

(Շարունակելի)

---

ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացանք «Գործ» գրական-գիտական և հասարակական ամսագրի № 1-ը, ճոխ բովանդակութեամբ. գրական բաժնում գրուածքներ ունեն՝ Զ. Եսայեան, Յ. Յովհաննիսեան, Յովհ. Թումանեան, Վ. Տէրեան և Ծ. Թորգոմեան։ Հասարակական-գիտական բաժնում՝ Յ. Մանանդեան, Դ. Անանուն, Եղ. ք. Գեղամեան, Ա. Չոպանեան, Լազարեան, Ֆրանգեան և ուրիշներ։

Մօտակայ համարներից մէկում մենք պիտի անդրադառնանք «Գործ»-ի մասին։

—

Ստացանք «Առողջ կեանք», հրատարակութիւն Բ. Հ. Կ. Մ. Բժշկական ընկերութեան։

—

Ստացանք Լորդ-Բրայսի ղեկավարութեամբ խմբագրուած «Կապոյտ Գիրքը», մօտ 600 էջ, նուիրուած ամբողջապէս հայկական կոտորածներին և դաւին։

---

ՔՐԴԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ազգային Բիւրօն ժամանակին պատուիրել էր Լէօին պատրաստել Քիւրդերի պատմութիւնը, որ սակայն ցարդ անտիպ էր մնում։ Այժմ ուրախութեամբ սրտի լսում ենք, որ ինժեներ Վաչեանը պատրաստակամութիւն է յայտնել այդ կարեւոր գործը իւր ծախքով հրատարակելու։

---

# Գեղարուեստ

## ԻՄ ՀԻՆ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Տարիները անուշ, օրերս զուարթ
Ես չեմ զգար, չեմ տեսներ այդ.
Ո՞ւր են իմ երկրի օրե՛րը ազատ,
Ո՞ւր է Նոր տարին անո՜ւշ, հարազա՛տ։

Հպարտ լեռների սուրբ խաչը վկայ,
Սիրտս սփոփող արցունքս սրբող ոչ մի բան չկայ.
Օտար հողի վրայ, հեռու մեր երկրէն,
Ո՞րը ես մոռնամ իմ մեծ տարտերէն։

Ինչպէ՞ս տօնեմ ես ուրախ Նոր-Տարին
Երբ մայրս ու քոյրերս քիւրտերը տարին.
Ինչպէ՞ս երգեմ ես եկող Նոր-Տարին
Երբ արցունքն է խեղդող սիրտս մանուկին։

Հպարտ Մասիսի սէգ արծիւ վկայ,
Երկրի Նոր-Տարին ոչ մի տեղ չկայ.
Մայրս ու քոյրերս միասին առած
Տօնած եմ տարին, մեծ հաճոյք առած։

Առանց մայրիկի և քոյրիկների Նոր-Տարի կը՞լլայ։

Նորայր Դաբաղեան *)

*) Ծիրանաւորի որբանոցի վանեցի 13 տարեկան այս տղայի բանաստեղծութիւնը տպագրում ենք անփոփոխ, իբրև մի նմուշ որբերի բազմաթիւ անպաճոյճ բանաստեղծական արտայայտութեանց և իբրև արտացոլումն իրենց աղեխարշ հոգեկան վիճակի, որ սահմանել է այս անմեղների համար առ ժամանակ անլուր այս ահռելի պատերազմը իւր չարաղէտ հետևանքներով։ Խմբ.

---

# Մատենախօսութիւն

Դ. Դեմիրճեան. Բանաստեղծութիւններ. գրակ առաջին. 1916 թ. Թիֆլիս.

### ՄԱՐԴՈՒ ԵՐԳԻՉԸ *)

Դեմիրճեանի Մարդ-գեղեցկի գոյները քանի գնում աւելի խտանում են։ Որքան մարդը ընդհանրապէս է նրա սիրոյ ու երգի առարկան, որքան հասարակական «ես»-ը տիրականօրէն հըրամայէ նրան, բայց նա՝ Դեմիրճեանը, ամենէն առաջ՝ որոշ համակենցաղի, ժխորի ու որոշ կուլտուրայի որդի է. և ահա այդ որոշը, ամենէն մօտիկը, ամենէն տանջուած-գեղեցիկը իր հայրե-

*) Տես «Համբաւաբեր» № 1։

նի ափն է, իր հայեցողութեան և ինտուիցիայի անմիջական առարկան։ Խոստովանել պէտք է, որ այս երկրորդ դէպքում էլ նա չի կոնկրետացել ու կոպտացել։

Հարցը դրել է ապրել ու պատկերել։ Ահա մի պզտիկ ոտանաւորում մեր ազգային ողբերգութիւնն է խտացրել։

Ե՞րբ կդառնաս, սաս, ծիծեռ.
—Ես էլ չեմ գայ Երկիրը ձեր։
Երբ օրերին գարնանային,
Վերականգնենք մեր յարկը հին,
Յետ կդառնա՞ս, սա՛ ծիծեռ,
—Ջէ, էլ չեմ գայ Երկիրը ձեր։
Կանցնի մրրիկն արեան օրի,
Մենք կդառնանք հեզ ու բարի,
Դու յետ չե՞ս գայ, սա՛ ծիծեռ,
—Ես չեմ սիրում Երկիրը ձեր։
Դարձի՛ր, դարձի՛ր, անուշ ծիծեռ,—
—Ա՛հ, նզովւի Երկիրը ձեր։

Հարցերի լուծումը, «ինչու»-ները չեն հետաքրքրում նրան, հրապարակախօսի պարտականութիւնից ու կոչումից շատ է հեռու։ Մի սիրտ ունի, որ ցաւում է մարդու կորստի և տանջանքի առաջ ու այստեղ էլ կանգնում է և պէտք է կանգնէր։

Որ Թէքէեանը իր գեղեցիկը և նրան առնչակից բոլոր երեւոյթները ապրում ու վերարտադրում է լիրիկօրէն, որով է կացուցանում նաև այն հանգամանքը, որ կամական տարր չկայ բնաւ նրա երկերում։ Եթէ միտքը Տէրեանի մօտ է համր ու կոյր, Թէքէեանի մօտ էլ կամքն է խուլ։ Բանաստեղծը այս մեծ մարդասպանութեան աղմուկի մէջ երբէք չեշտուած պահանջով, լաւի և վատի հրամայականով չէ առաջնորդւում, որովհետև ամենէն առաջ լիրիկ է։ Այս ողբերգութեան մէջ Թէքէեանի մասնակցութիւնը աւելի ապրելն է, քան կամենալը։ Եթէ Գամառ-Քաթիպան հայ կամքի երգիչն է գերազանցապէս, Յով. Յովհաննիսեանը՝ խորունկ խոհականութեան, Տէրեանը՝ մթնշաղային զգալակերպի միայն և միմիայն—, ապա Թէքէեանը եթէ ոչ սինթէզը այդ բոլորի, գոնէ այդ ճանապարհի վերայ է։ Թէքէեանի մօտ հասարակական «ես»-ը ապրում է ոչ իր ստատիք վիճակով, այլ դինամիք։ «Ես»-ի կամեցողութեան այս երկու վիճակը, մեր գրականութեան մէջ բանաստեղծի հասարակական մոտիւները քննելիս երբէք ի նկատի չի առնուել։

Հասարակական «ես»-ը այդքան լայնօրէն ապրելուց յետոյ մենք նկատում ենք մի այլ վիճակ,—Թէքէեանը փարում է երազին, ոչինչ տարօրինակ և ոչինչ հակասական։ Իր—բանաստեղծի սուկական կարողութիւնը անզօր է փրկելու իր գեղեցիկը և ահա կեանքի մէջ բանաստեղծը ստեղծում է մի ուրիշ կեանք-երազ, ուր ազատօրէն երազում է մարդու վերջնական ազատագրման և գեղեցկացման մասին։ Փարում է հոգեզմայլ երազին և չի ցանկանում արթնանալ, որ չտեսնի անկարելին։

Ծանր է տեսնել միշտ անբաժան,
Քեզ ուղեկից ամպոտ օրեր,
Ծանր է լինել չար ու դաժան...
Ես կուզէի պայծառ ու վառ,—
Իմ շուրթերից զարուն բուրէր.—
Բարի, ուրախ սիրտս հևար։

Բայց չար ու դաժան լինելը իրականի հրամանն է և եթէ այդ օրէնք է ու ինքն էլ անզօր, ապա և այդ իրականից մինչև երազը մի քայլ է։

Բայց սեղմեցի, որ չզարթնին աչերս յոգնած,
Եւ իմ հոգին երազներիս գերի մնաց։

Կայ և մի ուրիշ հանգամանք կարևոր ու խրատական մեր բոլոր պրպտումներից յետոյ։

Ո՞վ է մեղաւորը, ում գլխին է իջնելու բանաստեղծի եթէ ոչ հրապարակախօսական մուրճը, գոնէ նրա զայրոյթը։

Այստեղ էլ Թէքէեանը բարձր է առօրեայից. մեղաւոր չըկայ. բոլորը հաւասար չափով մեղաւոր են, բայց և արդար, բոլորն էլ ենթակայ են արեան ու հարուածի և բոլորն էլ իրենց հերթին արիւն են թափում և հարուածում։ Պէտք է ցաւել և ափսոսալ բոլորի համար։ Մօր համար զաւակներից ո՞րն է սիրելի և ո՞րի մահը կցանկանար մի մայր։ Մի հոյակապ ընդհանրացումով Թէքէեանը դառնում է բոլորի երգիչը. նա բոլորի եղբայրն է։

Արիւնով հարբած իմ խեղճ եղբայրներ, ինձ չէք ճանաչում...
Կուրացնք միթէ հրդեհների մէջ ռազմի ճաճանչում։

Այս մի մեծ պլիւս է. թերևս դաս է առել իր մեծ ուսուցիչ Բալ'մոնտից, որից և մեծ վարպետութեամբ այնպիսի կտորներ է թարգմանել, որոնք հաշտ են իր գեղեցկի հետ։

Դառնալով իր հայրենի իրականութեան, Թէքէեանը մընում է աւելի քան հետևողական, աւելի քան մարդ-բանաստեղծ։ Սակայն բարի, գթոտ ու բոլորի եղբայր բանաստեղծը դառնում է չար ու անխնայ։

Բնաջնջումը մի ցեղական ամբողջի՝ չէր կարող բանաստեղծին պահել իր աղօթողի խցիկում։

Մենք միշտ սիրել ենք, կերակրել, ստեղծել ենք մի հոյակապ հայրենիք, որը սակայն հիմա չկայ. ինչո՞ւ, ո՞ր արդարութեամբ. արդարութիւնը կռուի հրաւէրն է, որ հնչւում է այնքան ցաւով ու ակամայ։

Մեր երկիրը սուրբ մեծ էր և անափ,
Մենք կարօտ չէինք հողի, ււարի.
Մենք ապրում էինք երգով անտագնապ,
Հնչուն ծիծաղում ու ժպտում բարի։
Բայց դու, թշնամի, նենգ ու տմարդի,
Քանդեցիր մեր մէջ յոյսի մի տաճար.
Դու մեզ քաշեցիր արիւնոտ մարտի,
Եւ մեր ոճիրին դու եղար պատճառ։
Է՜հ, ինչ մոռանանք, այդ չենք մոռանայ,
Եւ չար ենք արդէն սիրով ու կամայ,
Եւ հարուածը մեր դաժան, անխնայ—
Ընդունէ հիմա, ընդունէ հիմա։

Գուցէ ճիշտ է, թէ սիրոյ մէջ գերազանց չափով թշնամութիւն կայ։ Եթէ մեղաւոր չէ նա, ով կտրում է իմ, քրոջս վիզը, մեղաւոր չեմ ապա և ես, որ պաշտպանեմ նրանց։ Այս մեր իրականութեան ամենահրամայական հրամանն է։

Ով սիրում է մարդուն, չի կարող չհաւատալ, եթէ ոչ նրա ներկային, գոնէ ապագային, և Թէքէեանը մի երկաթէ հաւատ ունի թէ դէպի մարդկանց եղբայրութիւնը և թէ դէպի իր հայրենի աշխարհի ապագան ու յաւերժութիւնը։

Կ'քանդեն նոքա, կ'կորչեն անհետ
Իրենց աւերում...
Դու կայիր, դու կաս, կլինիս յաւէտ,
Քո սուրբ աշխարհում։

Հեռու բարոյախօսից, բայց քով-քովի կանգնած բանաստեղծին։ Այս օրերում դէմքը պահել անաղարտ, չխառնուել առօրեայի լաւ ու վատին, սիրել ու երգել, երգել ու հասկանալ ու աղօթել յանուն մարդու և գեղեցկի։ Դէմքը չմթագնել—ահա թէ ինչպէս պէտք է հասարակական մոտիւները երգել։

Մինչդեռ Տէրեանը հիւանդ հիացում է տալիս, Թէքէեանը թարմ ու կարմիր արիւնն է հոսեցնում դէպի սիրտը, որ նա բաբախէ ու սիրէ մարդուն և աշխարհը։ Մեր գրականութեան մէջ դեռ ոչ մի լիրիկ բանաստեղծ այնպիսի սրբազան դաշն չի կապել մարդու հետ, ինչպիսին Ալագեազի հովերի տակ մենացած մարդու երգիչ Թէքէեանն է կապել։

Փ. Շահինեան

---

## ՓՈՍՏ-ԱՐԿՂ

Պ. Արամ Նիւրիխանեան. Ձեր անունով Երզնկայից ստացուել է փոստով 150 ռ., բարեհաճեցէք մտնել Կ. Հ. Բ. Ը-թեան գրասենեակը և ստանալ։

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Փօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.